ՀԱՅ ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆԸ

# ՍԵՒ ԾՈՎԷՆ ՄԻՆՉԵՒ ԿԱՐԻՆ

---

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ղ.

# ՀԱՅ ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆԸ

# ՍԵՒ ԾՈՎԷՆ ՄԻՆՉԵՒ ԿԱՐԻՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1921

ՀԱՅ ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆԸ

# ՍԵՒ ԾՈՎԷՆ ՄԻՆՉԵՒ ԿԱՐԻՆ

ՊԱՏՄԱԿԱՆ-ԱԶԳԱԳՐԱԿԱՆ

## ՀԱՐԵՒԱՆՑԻ ԱԿՆԱՐԿ ՄԸ

---

ԳՐԵՑ

Հ. ՅԱԿՈՎԲՈՍ Վ. ՏԱՇԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ




ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1921

# Ա Զ Դ

Համառօտ Ակնարկս, որ գրուած է քանասէր բարեկամի մը յորդորանօք, քաղուածք մըն է փոքր մէկ մասին ընդարձակ եւ երկարամեայ Ուսումնասիրութեանց, որոնց նիւթը կը կազմեն Հայաստանի արեւմտեան-հիւսիսային սահմանագաւառները, այսինքն՝ յատկապէս Փոքր-Հայք անձուկ եւ ընդարձակագոյն մտօք (արդի Սեբաստիոյ նահանգը), Խաղտիք (Տրապիզոնի նահանգը), Տայք (Ճորոխի աւազանը) եւ Բարձր-Հայոց՝ անոնց սահմանակից մասերը: Երբ յաջողի մեզի լիովին աւարտել ու հրատարակութեան տալ պատմական, տեղագրական եւ ազգագրական Ուսումնասիրութիւնքն յիշեալ աշխարհաց, առիթ պիտի ունենանք ներկայացրնելու ճոխագոյն փաստեր ու լուսաբանութիւններ նաեւ Հայ-մահմետականութեան ծագման ու տարածման եւ արդի վիճակին մասին: Ակնարկիս մէջ քիչ մ՚ընդարձակ

շրջանով է միայն ընդհանուր պատմական տեսութիւնը. մնացեալն ի նկատի կ՚առնու միայն փոքր աշխարհամաս մը, Րիզէէն մինչեւ Կարին: Բնական է թէ ուր խօսք կ՚ըլլայ բնակչութեան արդի վիճակին մասին, մենք աչքի առջեւ ունինք 1910/11 տարւոյ վիճակը, զոր մեր ուղեւորութեանց ընթացքին մէջ ալ անձամբ կրցանք ստուգել:

Հ. Ց. Տ.

ՀԱՅ ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆԸ

# ՍԵՒ ԾՈՎԷՆ ՄԻՆՉԵՒ ԿԱՐԻՆ

## ՀԱՐԵՒԱՆՑԻ ԱԿՆԱՐԿ ՄԸ

*Շատերու համար քիչ ծանօթ իրողութիւն մ'ըլլալու է այն թէ Սեւ ծովու ափանց վրայ, ուր բաւական թուով հայ բնակչութիւն մը կայ, առանձին կերպով հոծ հայութիւն մ'եղած է Պոնտական շղթային դէպ ի ծով իջնող հովիտներուն մանաւանդ վերնամասերուն մէջ, ի մասնաւորի* Տրապիզոնի արեւելքէն մինչեւ Րիզէի արեւելքը։ *Այս հայութիւնը ԺԸ դարուն ընթացքին արիւնալից կոտորածներով* բռնադատուած է իսլամական կրօնքն ընդունելու. *բայց պահած է շատ մասամբ իւր հայ նկարագիրը, գոնէ մասամբ նաեւ* հայերէն լեզուն։ *Առանձնապէս հայ* Համշէնը (*քարտէսներու վրայ Թրքաձեւ* Hemschin) *քիչ ծանօթ աշխարհ մըն է. եւ Կիպերտի նորագոյն եւ լաւագոյն քարտէսն իսկ այս տեղ մեծ սպիտակ բաց մը միայն*

կը ներկայացընէ[1]։ Բայց նշանաւոր գիտնական մը կտրած անցած էր աշխարհը։ Երկրախօս Քոխ Րիզէէն ելած է այս լեռնաշղթան՝ տեղացւոց համար սովորական ճամբով[2], իջնալու համար դէպ ի Սպեր (Թրքաձեւ Ispir)՝ Ճորոխ գետոյ վրայ. բայց վերադարձած է դժուարին ճամբով մը՝ Կեւակէ (քարտէսին վրայ Kevak) անցնելով Համշէնի անդնայց ձորերը, եւ ի վերջոյ իջած Աթինա[3]։ Քոխի մատեանը, թէեւ ցանցառ, տեղեկութիւններ կու տայ նաեւ այն բռնի մահմետականացման մասին, որոնց ենթարկուած էր հայ ժողովուրդը՝ լեռնաշղթայիս երկու երեսին վրայ ալ։ Եւ Քոխ իւր այսպիսի տեղեկութիւնքն քաղած է նոյն իսկ այն «մահմետական»-

---

[1] Richard Kiepert, Karte von Kleinasien. AVI Tirabzon. Տայոց համար՝ բաց աւելէ նաեւ ուրոյն քարտը՝ BVI Erzerum: «Կ.» = Կիպերտի այս քարտերը։

[2] Dr. Karl Koch, Wanderungen im Oriente während der Jahre 1843 und 1844. II. Reise im pontischen Gebirge und Türkisch-Armenien. Weimar 1846. Ի մասնաւորի էջ 1—118. 235 ff.

[3] Այս ճամբուն՝ ինչպէս մեր ակնարկին մէջ յիշելի միւս մասերուն՝ արդի ուղիները բաւական լաւ՝ թէեւ համառօտիւ նկարագրած է Charles Wilson, Handbook for Travellers in Asia Minor, Transcaucasia, Persia etc. London 1905, յատկապէս էջ 200—219։

ները՝ որոնց քով աւելի հիւր եղած է, ոչ թէ քրիստոնեայ Հայերէ՝ որոնք տակաւին մեծ բազմութեամբ կ՚ապրին Պոնտական լեռներէն մինչեւ Կարին՝ իրենց մահմետականացած ցեղակիցներուն հետ։ Արդ այն գծի մասին՝ որ Րիզէէ մինչեւ Կարին իբր 250 քիլոմետր է, կ՚ուզենք քանի մը խօսք ըսել, մենք՝ որ հայրենեօք ալ այս լեռնաշղթայէն ըլլալով (Խոտրջուր), առիթ ունեցած ենք յետոյ 1910ին այլեւայլ ուղղութեամբ կտրելու անցնելու այս գաւառաց մեծ մաս մը եւ երկար ժամանակէ ի վեր աշխատած ենք ուսումնասիրելու անոնց անցեալը։

## Ա.

## Պատմական Ակնարկ:

Հայ ցեղն հնուց իսկ անհրաժեշտաբար աղերս ունենալու էր Հայաստանի սահմաններէն քիչ մը հեռու Սեւ ծովու ափանց հետ։ Արդ ճշդիւ այն ծովափը, ուր կը գտնուի հայ Համշէն, կը վերաբերէր Հայաստանի նոյն իսկ երբ ասի պատմութեան մէջ կ՚երեւայ առաջին անգամ Armenia ձեւով։ Դարեհի օրով Հայաստան բաժ-

նուած էր երկու սատրապութեանց։ Թողլով անոնց արեւելեանը (ԺԸ սատրապութիւն), ուր կը բնակէին Ալարոդիք եւ Սասպիրք՝ մինչեւ Կողքիս (Հերոդ. Գ. 94, Դ, 37 եւն), ուստի մինչեւ արդի Բաթումի մօտերը, այն ժամանակի արեւմտեան Հայաստանը (ԺԳ Սատրապութիւն կամ Հարկաց Շրջան) “Հայոց եւ դրացեաց„ կը հասնէր “Մինչեւ Մեծ ծով„ (μέχρι τοῦ πόντου τοῦ Εὐξείνου. Հերոդ. Գ, 93)։ Այս ծովեզերքը Տրապիզոնէ արեւելք ըլլալու էր. որովհետեւ անկէ արեւմուտք ուրոյն Շրջան մըն էր (ԺԹ) պոնտական մանր ազգերու՝ Մոսքացւոց, Տիբարենացւոց եւն։ Քսենոփոնի ատեն ալ կրկին էին Հայաստանները, երբ կը նկարագրէ Յունաց Բիւրուն նահանջն այս երկրին մէջէն հարաւէն դէպ ի հիւսիս, հանելու համար Պոնտական լեռներն ու Տրապիզոն (Քսենոփոն, Արշաւ. կամ Anabasis, IV, 3 ff.)։ Այս առթիւ կ'իմանանք թէ Հայաստանի այս հիւսիսային սահմաններէն մաս մ'ապստամբ էր, յատկապէս Խաղտիք (Χαλδαῖοι) եւ Տաոք (Τάοχοι, հայերէն -ք յոգնակերտով, հմմտ. Քսեն. Ե, 5 եւն)։ Միւս կողմանէ Հայաստան ինչպէս մինչեւ Եփրատ, անկէ

վեր դէպ ի արեւմուտք կ'երկարէր այնչափ որ Հալիս գետը (արդի Թրք. Գըզըլ-Ըրմագ) կը բղխէր Հայաստանի լեռներէն (ὁ Ἅλυς... ῥέει ἐξ Ἀρμενίου οὔρεος, Հերոդ. Ա, 72)։ Ուստի կը պարունակէր առնուազն գետոյն ակնաղբերաց աշխարհն Երզնկայի արեւմտակողմէն գոնէ մինչեւ Սեբաստիա, եւ որ քիչ մ'ետքն անձուկ մտօք ուրոյն "Փոքր Հայք" (Armenia minor) կոչուեցաւ։ Եւ այս Փոքր-Հայքն է որ յետոյ ունեցաւ վերոյիշեալ մանր ազգաց ծովեզերքը։ Երբ Սելեւկեանց Անտիոքոս Մեծ որոշիչ պարտութիւն կրեց Հռոմայեցիներէն Մագնեսիոյ քով (190 Ն. Ք.), ուրիշ երկիրներու հետ՝ անկախ եղաւ Հայաստանն ալ։ Բայց դարձեալ կրկին՝ երկու թագաւորներով՝ Արտաշէս եւ Զարեհ ("Զարիադրէս")։ Մեծագոյն մասն էր Արտաշիսի "Մեծ Հայք" (Armenia maior), որ բաց ի Կարին ու Դերջան գաւառներէ՝ որոնք յատկապէս կը շեշտուին, կը պարունակէր "Պարխարի ստորոտը" (Ստրաբոն, c. 528 Παρώρεια τοῦ Παριάδρου), Կղարջքն եւն։ Հին Հայաստանի աշխարհագրութեան նորագոյն քննիչը՝ Հիւբշման՝ "Պարխարի ստորոտը" կը հասկընայ Տայոց աշխարհը,

որ միակ հնարաւորն է ըստ գրից[1]։ Թէ այս «ստորոտը» նաեւ որ եւ է ծովահայեաց հովիտ կը պարունակէր, որոշ չէ, եւ նուազ հաւանական։ Գոնէ Արշակունեաց Հայաստանը՝ Բարձր-Հայոց եւ Տայոց նահանգաց մասերով, Ճորոխի գծի վրայ՝ կը պարունակէր Պարխարի ստորոտները, մինչեւ բարձրագոյն լեռնաշղթային ջրաբաշխը։ Այս բարձր գագաթներէն Արշակունեաց Հայաստանը ծովը կը տեսնէր, բայց իբր պետութիւն՝ քանի մը տասնեակ քիլոմետր հեռու ծովափը չէր իջած։ Ի հարկէ ասի արգելք մը չէր՝ որ այն քայլը, զոր Պետութիւնը չէր առած, առնուր հայ ցեղը։ Արդէն հայ ցեղին նիստերու սահմանները չեն համապատասխաներ հին Հայաստանի պատմական սահմաններուն, ինչպէս ուրիշ կողմեր ալ։

Բայց հայ ցեղը՝ նաեւ իբր ուրոյն փոքր պետութիւն մը հասաւ ծովը քիչ մ՚աւելի արեւմուտքը։ Բաց ի Արտաշէսի «Մեծ»

---

[1] H. Hübschmann, Die altarmenischen Ortsnamen, mit Beiträgen zur historischen Topographie Armeniens, Strassburg 1904. Հայ թրգմ. Հ. Բառնաբաս Վ. Պիլէզիկճեան, Հին Հայոց տեղւոյ անունները, Վիեննա 1907. Ազգ. Մտդրն. ԾԳ.։

Հայաստանէն եւ Զարեհի Հարաւային Հայաստանէն, որուն կեդրոնն էր Ծոփք (Sophene, արդի Խարբերդի շրջանը), կազմուած էր երրորդ Հայաստան մ՚ալ, վերոյիշեալ «Փոքր-Հայք»: Ծոփաց եւ Փոքր-Հայոց թագաւորաց մասին՝ բաց ի դասական մատենագրաց աւանդածներէն՝ կը վկայեն նաեւ դրամները[1]: Արդ Փոքր-Հայք ունեցան բաւական երկար ծովեզերք մը, որովհետեւ՝ ինչպէս Ստրաբոն կը գրէ «Հնազանդեցուցին Տիբարենացիներն ու Խաղտիքն, այնպէս որ իրենց իշխանութիւնը տարածեցաւ մինչեւ Փառնակիա ու Տրապիզոն» (Ստրաբոն, c.555, μέχρι Τραπεζοῦντος καὶ Παρνακίας): Երբ Տիգրան Մեծ՝ գահընկէց ընելով զԱրտանէս Ծոփաց՝ միացեալ պատմական Հայաստանն ստեղծեց, չկրցաւ Փոքր-Հայքը միանալ: Անոր տէր եղաւ հզօրագոյն մը՝ Պոնտոսի Միհրդատ Զ. Մեծ Եւպատոր, որուն առջեւ ստիպուած էր տեղի տալ Փոքր-Հայոց Սիսիս արքային: Բայց երբ Հռոմայեցիք յաղթելով Միհրդատայ՝ տիրեցին նաեւ Փոքր-Հայոց, վերահաստատեցին այն թագաւորութիւնն՝

[1] Լաւագոյն երկն է՝ Ernest Babelon, Les Rois de Syrie, d'Arménie et de Commagène, Paris 1890.

քրենց գերիշխանութեան տակ, տալով զայն այլեւայլ իշխանաց։ Քանի որ նոյնն ընդունեցաւ Պողեմոն Ա. եւ իր տունը, Փոքր-Հայոց այս ծովեզերաց աշխարհագրական ուրիշ յորջորջանք մը յետոյ սովորական եղաւ՝ «Պողեմոնեան Պոնտոս» (Pontus Polemoniacus)։ Ստրաբոնի գրած ատեն կ'իշխէր անոր այրին եւ իշխանակիցը՝ Պիւթոդորիս (Phytodoris), որուն որդին թագաւոր եղաւ Մեծ Հայոց՝ Զենոն-Արտաշէս (18 Յ. Ք.)։ Անոր համար Փոքր-Հայոց ստորագրութեան մէջ կ'ըսէ թէ Պիւթոդորիս (բաց ի «լաւագոյն» մասերէ)՝ իբրեւ Փոքր-Հայոց դշխոյ՝ «ունէր Տիբարէնները, Խաղտիք, մինչեւ Կողքիս, եւ մինչեւ Փառնակիա ու Տրապիզոն» (c. 555)։ Փոքր-Հայք հռոմէական նահանգ ըլլալէն (69/70 Յ. Ք.) ետքը՝ կցուեցաւ նորաստեղծ ընդարձակ հռոմէական Գամրաց նահանգին, որուն ծովեզերքը կը հասնէր գոնէ մինչեւ արդի Բաթում։ Դիոկղետիանոս կրկին հաստատեց «Փոքր-Հայք» իբր ուրոյն նահանգ (մայրաքաղաք՝ Մելիտինէ, արդի՝ Մալաթիա), Թէոդոս Մեծ բաժնեց երկուքի՝ Առաջին Հայք (Armenia prima, մայրաքաղաք Սեբաստիա) եւ Երկրորդ Հայք (Armenia se-

cunda, մայրաքաղաք Մելիտինէ)։ Այս «Փոքր-Հայք» ընդարձակուած մանաւանդ դէպ ի Հարաւ՝ կը հասնէր մինչեւ Տաւրոսի լեռները, մինչեւ Կոկիսոն, բայց ծովեզերք չունէր։ Նոյն Թէոդոսի Ա. ատեն Մեծ Հայաստանի բաժանմամբ (387ին)՝ Հռոմայեցւոց բաժին ինկած էր նաեւ Բարձր-Հայք մինչեւ Կարին։ Ասի կառավարուեցաւ արտակարգ կերպով, մինչեւ որ Յուստինիանոս կազմակերպեց իւր Ա—Դ «Հայք» գաւառները։ Արդ այս բաժանմամբ (536ին) Փոքր-Հայոց մէկ մասը, հռոմէական Բարձր-Հայք եւ ծովեզերքը՝ Կիրասոն ու Տրապիզոն միացած՝ կազմեցին Յուստինիանու «Ա. Հայք» կամ «Ներքին Հայք» (ἡ ἐνδοτάτη Ἀρμενία)։ Հռոմէական Հայաստան ունեցած էր կրկին իւր ծովեզերքը[1]։ Եւ այսպէս մնաց նոյն գաւառը՝ նոյն ծովեզերքով նաեւ Մաւրիկ կայսեր (582—602) Նոր բաժանմանց ատեն, անուն առնլով «Մեծ Հայք»։

Երբ Արաբացւոց հզօրանալով, եւ պա-

---

[1] Հմմտ. այս խնդրոյ մասին ի միջի այլոց. Dr. Karl Güterbock, Römisch-Armenien und die römischen Satrapien im 4. bis 6. Jahrh., Königsberg 1900, Հայ Թարգմ. Հ. Մկրտիչ Նշանեան, «Հռովմէական Հայաստան» եւն, Վիեննա 1914. «Ազգային Մատ.» ՀԵ։

րագայից փոխուելով՝ Հարկ եղաւ բանակաթեմերու դրութեան, ստեղծուեցաւ հսկայածաւալ "Հայկական Բանակաթեմ"ը, որ Բիւզանդեան Պատմութեան մէջ յաճախ վճռիչ դեր կը խաղայ (θέμα τῶν Ἀρμενιάκων, կամ պարզ Ἀρμενιακόν), որուն կը վերաբերէր՝ ի միջի այլոց՝ ամբողջ ծովեզերքը Սինոպի մօտերէն մինչեւ Բաթումի մօտերը։ Բայց երբ ասի բաժնուեցաւ այլեւայլ մասանց, "Հայկական"ին մնաց արեւմտեան բաժինը, (— Թ. դարու վերջերը ուրոյն բանակաթեմ եղան նաեւ "Կողոնիա" արդի Շապին-Գարահիսար եւ Սեբաստիա. —) արեւելեան ծովափունք կազմեցին ուրոյն թեմ մը՝ կենդրոն ունենալով Տրապիզոն, եւ կոչուեցաւ հին անուամբ մը Խաղտիք (Χαλδία)։ Ասի եղած է իբր 837ին[1]։ Խաղտեաց թեմին կը վերաբերէին, ցորչափ Բիւզանդացւոց ձեռք մնացին, Բաբերդ ու Սպեր, եւ քիչ ժամանակ նաեւ Եկեղեաց[2]։

---

[1] Հմմտ. J. B. Bury, A history of the Eastern Roman Empire (A.-D. 802—867), London 1912, p. 223, 261

[2] Բանակաթեմերու մասին՝ հմմտ. H. Gelzer Die Genesis der byzantinischen Themenverfassung, Leipzig 1899, հայ թարգմ. Հ. Գարեգին Գարանֆիլեան, "Սկզբնաւորութիւնք բանակաթեմերու դրութեան". Վիեննա 1903. "Ազգ. Մատ." ԽԴ։

Մնացեալը կարեւոր չէ։ Սելջուկեան արշաւանքները լիովին այլափոխեցին ամէն ինչ։ Միայն ծովեզերքը կրցաւ մնալ երկար ատեն Յունաց ձեռքը, եւ Տրապիզոն ունեցաւ իւր "Կայսրութիւն„ն անգամ, մինչեւ որ Օսմանեանք տիրեցին ամբողջ այս ծովեզերքին (1461 ին)։ Եւ այս օրէն կը սկսի բռնի մահմետականացումը նախ ծովափնեայ քաղաքաց Սիւրմենէ (հին Susurmaena), Օֆ (հին Ophis), Րիզէ (հին Rhizus) եւ Լազաստանի։ Այս վերջնոյս մասին կը բաւէ միայն յիշել թէ Ղազիկէ (Lazica) անուն կը տրուի հին Կողքիսի. եւ երբ Ե—Զ դարուն անիկայ կռուախնձոր եղաւ Բիւզանդեանց ու Պարսից մէջ, այս անուամբ կը նշանակուէր երկիրը Ճորոխի բերնէն անդին[1]։ Այսու հանդերձ ինդիր չկայ թէ Լազերը կանուխէն Ճորոխէն արեւմուտք ալ կը նըստէին, գլխաւորաբար այն տեղը՝ ուր հնագոյնք կը դնեն Sanni տոհմը։ Անուանս լաւագոյն հնչումն է անագան Բիւզանդեանց ալ գրած Tzani, Հայոց "Ճանիք" (Խորենացի եւն), Վրաց՝ Ճանէթ։ Պէտք չէ սակայն այս անուան

[1] Հմմտ. Լազիկէի մասին ի միջի այլոց՝ Brosset, Additions et Éclaircissements à l'Histoire de la Géorgie (I, 2), Pétersbourg 1851, p. 81—107.

հետ չփոթել Թիւրքմէններու ժամանակէ Ճանիկը[1]։

Այս դիտողութիւնները պէտք էին յաջորդաց աւելի լուսաւորութեան համար, մանաւանդ այն կէտին թէ հայ տարրը հնուց ի վեր առիթ ունէր ծովեզերքը զետեղուելու, եւ ինչպէս բնական է՝ ձուլելու եւ ձուլուելու այն տեղւոյ ազգաց հետ, որոնք յետոյ պատմութեան մէջ աներեւոյթ կ'ըլլան։ Արդէն Պլինիոս կը յիշէ թէ Տրապիզոն ընդարձակ լեռնէ պատուած է, "որմէ անդին Հայախաղտիք եւ Մեծ Հայք" (Hist. Nat. VI, 4 gens armenochalybes et Maior Armenia)։ Խաղիւբք տարածուած էին հին ժամանակ մինչեւ Տայոց մօտերը, ինչպէս կը նկարագրէ Քսենոփոն (Արշաւ. Դ. 7)։ Ստրաբոնի օրով՝ ինչպէս որոշ կ'ըսէ "Որոնք այսօր Խաղտիք՝ (Χαλδαΐοι) հին ատեն Խաղիւբք (Χάλυβες) կ'անուանէին. բայց իրենց գլխաւոր նիստն էր Փառնակիոյ կողմը" (c. 549)։ Այսպէս կը նշանակէ ուրիշ տեղեր ալ, օրինակի համար բաց ի

---

[1] Համմտ. այս վերջնոյս մասին D. M. Girard, Un coin de l'Asie Mineure. Le Djanik. Étude de géographie et d'histoire, I—II. ի „Muséon“, N. S. VIII, 1907, p. 100—171.

վերը յիշուածներէ նաեւ հետեւեալը. «Տրապիզոնի եւ Փառնակիոյ վերեւն են Տիբարէնք եւ Խաղտիք (Χαλδαῖοι), եւ Սանք (=Ճանք, Σάννοι) զորոնք յառաջ Մակրոն (յք. հյց. Μάκρωνας) կը կոչէին, եւ Փոքր-Հայաստան» (ἡ μικρὰ Ἀρμενία. Ստրաբոն c. 548): Հայ հին մատենագրութեան մէջ «Խաղտիք» կը նշանակէ Պոնտական լեռնաշղթայն՝ աւելի կամ նուազ խորութեամբ, իբր սահմանակից Բարձր Հայոց եւ Տայոց, ինչպէս արդէն դիրքը կը բերէր: Անագանագոյն մատենագրութեան մէջ որոշ կ'երեւայ Բիւզանդեան «Խաղտիք» բանակաթեմին ազդեցութիւնը. անոր համար ինչպէս Տրապիզոն Խաղտեաց մէջ է, նոյնպէս է ի մասնաւորի Բաբերդ. եւ այս քաղաքս գրուած բազմաթիւ հայ ձեռագիրք նաեւ նորագոյն դարերու՝ գրեթէ միշտ «երկիր Խաղտեաց» կ'ըսեն. եւ ասկէ դարձեալ նաեւ նոր բանասիրաց ոմանց կարծիքը թէ Բաբերդ Հայախաղտեաց վերաբերէր: Վերջինս ճիշդ չէ. հին Հայաստանի աշխարհագրութեան համեմատ Բաբերդ-Սպեր միակ գաւառ մըն էին, Բարձր-Հայոց մէջ. սակայն այս խնդիրները հեռուն կը տանին զմեզ: Միւս կողմանէ հին «Հայախաղտիք» փաստ

մը չեն ազգագրօրէն ըմբռնելու այն բաւական տարածուած յորջորջանքը, որով արդի Համշէնցին եւն “Հայ-Լազ„ կը կոչուի։ Այս յորջորջանքն այսօր պարզապէս տարազին համար է, զոր կը սիրեն կրել՝ ոչ միայն Համշէնցին եւ իր գաղութները, այլ նաեւ Ճորոխի գծի վրայ, Թորթում, եւ նաեւ այլուր. տարազ մը՝ որ ի վերջոյ միայն լազին ալ յատուկ չէ։ “Խաղտիք„ անունն այսօր հայ ժողովրդեան քով սովորական ծանօթ չէ, մինչդեռ մնացած է Պոնտական լեռնաշղթային հին Պարխար անունը (յն. եւ լտ. մատենագրաց Paryadres), եւ ի վերջոյ նաեւ Կիպերտի քարտէսը կը նշանակէ անոր մէկ մասը՝ Balchar-Dagh։ Կայ այսօր ալ համանուն (Parchal) գիւղ մը՝ տակաւին կանգուն գեղակերտ եկեղեցիով եւ Պարխալ-Ջուր մը՝ որ Խեւակի Ջրոյ հետ միացած՝ Ճորոխ կը թափուի։

Այժմ անցնինք տեսնելու այս Պարխարի եւ Խաղտեաց ծովահայեաց երեսի հայ գաւառները՝ Համշէն ու Սեւ Գետ։

## Բ.

### Համշէն եւ Սեւ Գետ:

Պարխար լեռնք, մանաւանդ Տրապիզոնի մօտերէն սկսեալ, շատ բարձր լեռնաշղթայ մը կը դառնան։ ծովեզերքէն մինչեւ լերանց ջրաբաշխ ողը հազիւ իբր 50 քիլոմետր օդային գծով՝ հսկայ պատուարի մը պէս կ'երեւայ ծովէն, միջին գոնէ 2000 մետր բարձրութեամբ։ Արդ Տրապիզոնի եւ Բաթումի գրեթէ մէջտեղ՝ Րիզէի հարաւարեւելքը, իբր Աթինայի Թիկունքը կը բարձրանայ լեռնաշղթային ամենաբարձր գագաթը, հսկայ կոն մը իբր 3700 մետր բարձրութեամբ, որ ծովէն վիթխարի ժայռի մը պէս կ'երեւայ երկար անջրպետ մը։ Ասի այսօր ալ պահած է զրուցախառն հայ անունը՝ Քաջքար, Կիպերտի քարտիսի վրայ ալ Katshgar-Dagh։ Նաեւ միւս անունը Varsambek որ եւ է "Բէկ"ի հետ գործ չունի. այլ "Վարսամ", աւելի "Վարշամ"՝ տեղական աւանդութեամբ կը կապուի Ս. Վարդանանց Նշխարաց հետ։ Զրոյցը հիմ ունենայ կամ ոչ՝ պատմական հիմ ունի այն կէտը թէ Աւարայրի ճակատամարտի վերջին դրուագը Հայաստանի այս

դժուարամատչելի ձորերը տեղի ունեցած է։ Նոյն իսկ "Մեծ Նախարարաց„ շատերն ապաստանած էին "յամուրս երկիրն Խաղտեաց„՝ Վարդանայ եղբօր Հմայեակ Համազասպեանի քով (Եղիշէ, Ը, 8, 14)։ Այս "յամուրս Տայոց„ ապաստանածները կը հաւաքուէին "առ լերամբն որ կոչի Պարխար մերձ առ սահմանակցութիւնն Խաղտեաց„, եւ իջնալով "ի յամրոցացն լերին Պարխարայ„՝ կը մղէին ճակատամարտն "ի գիւղն որ անուանի Ուջնհաղ ի գաւառին Տայոց„․ եւ հոս կը նահատակուէր Համազասպ (Ղազար Փարպ․ ԽԱ)։ Ուջնհաղ այսօր ալ կայ (Կիպերտ „Vordjnal“, բերդը՝ „Oshnagh kala“) Ճորոխի աջ ափին վրայ, որ կարեւոր հանգրուան է այս կողման արահետ ճամբաներու։ Քոխ ալ այցելած է գիւղս՝ Ճորոխի հովտին "այս դրախտին մէջ„․ եւ կանգուն գտած էր հին եկեղեցին, բայց ամայի․ որովհետեւ այն ատեն այլ եւս "միայն մահմետականք„ հոն կը բնակէին, որոնք սակայն տակաւին "մզկիթ չունէին„ (Քոխ՝ էջ 65—67)։ Պատճառն այն է որ Նոր մահմետական եղած էին։ Այսօր դարձեալ հայ-կաթողիկէ հասարակութիւն կայ հոն՝ Կարմիրքէ, եւ խաթարած եկեղեցին վերա-

նորոգուած է։ Զի՛րդ եւ իցէ, այս տեղ՝ Քաջքարի հարաւային ստորոտը հին պատմական հայ հողի վրայ ենք։ Տայոց նահանգի Արսեաց-փոր գաւառիս մասին՝ նաեւ քիչ մ'եւտքը։

Քաջքարի հիւսիսային ստորոտը՝ դէպ ի ծով իջնող բազմաթիւ խոր ձորերէ կազմուած է Համշէն։ Այս աշխարհին՝ Ը դարուն տիրած էր հայ իշխան մը Համամ անուն, Քաջքարի ճիշդ ստորոտը շինած բերդ ու աւան (աւանդութիւնը “քաղաք„ կ'ըսէ) որ իւր անուամբ Համամաշէն կոչուեցաւ, յետոյ ամփոփուած՝ Համշէն։ Տեղւոյս չէ մանրամասնօրէն ուսումնասիրել մանաւանդ այն յիշատակարանը, որ կցուած է Յովհաննու Մամիկոնեանի պատմագրութեան վերջը[1]։ Յիշենք միայն աւանդուածը թէ Վաշդեան “Վրաց իշխան„ հալածելով իւր քեռորդին Համամ, պարսիկ գնդաւ “էանց ընդ գետն Ճորոխ. եւ գնաց ի քաղաքն Համամայ, որ կոչի Տամբուր. էհար սրով եւ հրով եւ գերեաց զքաղաքն„։ Քաղաքին նահատակուած եպիսկոպոսը Մանկնոս անիծած էր Վաշդեանը, եւ “ի միւ-

[1] “Յովհաննու Մամիկոնէնի եպիսկոպոսի Պատմութիւն Տարօնոյ„, Վենետ. 1832. էջ 56—58։

սում աւուրն ճայթեալ ամպոց երկնից՝ Հրայրեաց արար զնա,,․ եւ անոր բանակէն “երեք հազար այր ի միում գիշերի սատակեցան,,։ Վաշդեան Հրայրեաց եղած էր “մինչ նստէր առ դուռն քաղաքին Տամբուրայ։ Զայս յետոյ շինեաց Համամ, զիւր անուն դնելով Համամաշէն,,։ Իբր Թուական կ'ըսուի թէ “ի սոյն ամի եկանէ Հերակլ, եւ սպանանէ զԽոսրով,, եւն (=Խոսրով Բ․ Պարուէզ)․ ուստի՝ 627/8 Յ․ Ք[1]։ Ուրիշ աւանդութիւն մը կ'ըսէ թէ Բագրատունեաց մայրաքաղաքին Անւոյ Ալփ-Արսլանէ առնուելու ատեն (1064ին)՝ բազմաթիւ Հայեր, նաեւ իշխանական ու թագաւորական տնէ, ապաստանած են Համշէնի կուսական անտառներով ձորերը, եւ երկար ժամանակ շրջակայից անծանօթ ապրած։ Աւելի տարօրինակ է այն զրոյցը, որ զՀամշէն արեւելեան եւ նաեւ Հայ Հէքեաթներու “մութ աշխարհը,, կ'ընէ։ Այս զրոյցը գրած է Հեթում, Կոռիկոսի տէրը, որ յետոյ կրօնաւորած է լատին վանքի մը մէջ (1305ին) եւ գրած լատիներէն ու գաղ-

---

[1] Հ․ Միքայէլ Վ․ Չամչեանց, Պատմ․ Հայոց․ Վենետ․ 1785, Հտր․ Բ, 339 կը զետեղէ այս պատմուածը 632 Յ․ Ք․ տարւոյն ներքեւ։

ղիներէն. իսկ զրոյցն անցած է ուրիշներու ալ[1]։ Հեթում Համշէնը “աչօք իմովք„ տեսած կ'ըսէ, եւ իրօք իւր երկար ուղեւորութեանց ատեն մօտերէն անցած ըլլալու է։ Այս իրականին “այնչափ մառախլապատ„ երկիրը՝ կ'ըլլայ „խաւարչուտ„, այնպէս որ ոչ ոք բան մը կրնայ տեսնել եւ հոն մտնողն այլ եւս “ոչ գտանէ շաւիղ դառնալոյ„։ Ասոր կը կցուի ուրիշ իբր պատմական զրոյց մը, որ “ընթերցեալ գտանի ի Պատմութիւնս Թագաւորութեանց Հայոց եւ Վրաց„։ Կը թողունք զրոյցի քննութիւնը. բայց միւսին պատճառը մեկնելի է։ Ծովակողման այս ձորերը իրօք յաճախ մշուշապատ են. եւ Պոնտական հսկայ լեռնագիծը պատուար մըն է Սեւ-ծովու ամպերու եւ մշուշներու որոնք կը նստին ձորերու վրայ։ Քօխ ալ գեղեցիկ նկարագրած է Համշէնի կուսական անտառներն եւ յաճախ միգամած խոր հովիտները, ուր՝ յաճախ պարզ առաւօտէ ետքը՝ կէսօրին մօտերը կը լողան ամ-

---

[1] Հմմտ. Recueil des Historiens de Croisades. Documents Arméniens. Tome II. Documents latins et français relatifs à l'Arménie, ed. Ch. Kohler. Paris 1906, յոկ. Introduction p. XXIV, եւ բնագիր, p. 129—130, 268—269։

պերը, մինչ հսկայ բարձունքները պարզ կը մնան[1]:

Համշէնի ձորերը թէեւ ծով կ'իջնան, բայց մեծ մասը ծովափէն 1—2 ժամ հեռաւորութեամբ կը դադրին. իսկ գլխաւոր հովիտները կ'երթան դէպի այժմ Փուրթունա կոչուած գետը (Furtuna, հին Pordanis), ուր ի վերջոյ կը հաւաքուին բոլոր ջրերը, իսկ սա ծով կը թափի Աթինայի արեւելակողմը: Այստեղ հայանուն գիւղը Արտաշէն (Կ. Artashen, Քոխ՝ Artaschin), որուն մօտ կը նշանակէ Կիպերտ Armene հրուանդանը, կը ցուցնէ այն ամենէն արեւելեան կէտը, ուր Համշէնցի հայը ծովափ իջած էր: Ընդհանուր առմամբ սակայն Աթինա Լազերու հող է. իսկ վերը՝ Խալայի շրջանը Համշէնի կը վերաբերի. անկէ արեւելք՝ տիրող են Լազերը, որոնք կանուխէն մահմետականացած՝ կրցած են պահել իրենց ազգային ինքնուրոյնութիւնը եւ գոնէ խորին գիւղերը՝ նաեւ լեզուն: Այսպիսի դժուարամուտ լերանց մէջ դիւրին էր իշխանաց կէս-անկախ գոյութիւն մը պահել: Նաեւ Օսմանեան տիրապետու-

---

[1] Հմմտ. Քոխ, էջ 18, 32—38, 100—110 եւն:

թեան տակ երկար տեւած է այս վիճակը, եւ Քօխ գեղեցիկ կը նկարագրէ տակաւին իր ուղեւորութեան ատեն շարունակուող այս դրութիւնը, որոնց տէարք իրական "Ձորապետ„էին (Քօխ այսպէս „Thalherr" կը թարգմանէ թուրքական ծանօթ "Տէրէ-պէյի„ն), եւ կ'որոշէ բազմաթիւ այսպիսեաց իշխանութեան հողերու սահմանները, որոնց մէջ փոքրիկներէն էր յիշեալ Արտաշէնի հողը (Քօխ, էջ 124.) իսկ մեծագոյններէն Համշէն, որուն մեծ իշխանն ուրոյն „Woy-wode" յորջորջանքը կը կրէր, իր ձեռքին տակ ունենալով մասնական հովիտներու տէր փոքր իշխաններ։ Քօխ կը ջանայ գծել իր ժամանակի Համշէնի աւատական գաւառին („LeLngau") սահմանները՝ հանդէպ Րիզէի եւ Լազաստանի գաւառներուն (էջ 23–25)։ Քօխ հիւր եղած էր ի Ճեմիլ (Կ. Djemil, Քօխ Djimil) — որ Րիզէէ Սպեր ճամբուն վրայ հանգրուան գիւղ մըն է, — Համշէնի իշխանաց միոյն, որ բնականապէս շատոնց մահմետականացած տնէ էր։ Սակայն անոր տիպարն այնպէս բնորոշ հայկական կը դտնէր, որ "թերեւս գլխաւորաբար հայ ա-րիւնը կը հոսէր իր երակաց մէջ. Թերեւս հայ ընտանիքէ մըն էր, որ իր գլխաւորին՝

Համամայ առաջնորդութեամբ՝ ժամանակներ յառաջ այս բարձր լերանց մէջ՝ բայց ծովահայեաց կողմը հաստատուած եւ գրաւած էր գաւառ մը, որ անոր անուամբ Համամաշէն, աղաւաղմամբ՝ Համշէն կոչուեցաւ եւ մինչեւ հիմայ ալ մնացած է (Քոխ, էջ 23)։

Համշէն իբր հայ երկիր տուած է բազմաթիւ նշանաւոր անձեր՝ հայ եկեղեցւոյ· եւ հայ ձեռագրաց գրչագիրներու մէջ ալ բաւական թուով են “Համշէնցի„ գրողները, ուր ալ գրած ըլլան։ Նշանաւոր է Յովհաննէս Համշէնցի վարդապետը († 1497), որ բազմաթիւ աշակերտներ ունեցած է՝ ուսուցանելով Երզնկայի մօտ Սեպուհ լերան Աւագ եւ Կայիփոս վանքերու մէջ։ Այս աշակերտք, որոնցմէ բազմաթիւ ձեռագիրներ պահուած են, ամենամեծ գովութեամբ կը խօսին անոր վրայ· եւ ոմանք նաեւ Համշէնի իշխանական անէ կ՚ըսեն։ Համշէնի մէջ ալ Եղէօմէր գիւղի քով կար նշանաւոր հայ վանք մը՝ Ս. Խաչիկ անուամբ, որմէ երկրին այն մասը յիշատակարանաց մէջ կը կոչուի “Խաչէքարայ վեճակ„։ Հակառակ բռնի մահմետականացման պատճառած կորուստներուն՝ Համշէն գրուած հայ ձեռնագիրներու շարք մը կայ, որոնց

մէկ մասը միայն ծանօթացած է ցուցակագրութեամբ։ Այսպիսիներ կան՝ Վիեննայի Մխիթարեանց հաւաքման մէջ (Համմ. Հ. Յ. Տաշեան, Ցուցակ Ձեռագրաց, թ. 170, 431, 4) — այսպիսի է Բրիտանական Թանգարանի Ms. Or. 2612, գրուած 1527ի (Համմ. C. F. Conybeare, Catalogue etc., Nr. 32) — այսպիսիներ՝ Վենետկոյ Մխիթարեան Հարց հաւաքման մէջ (Համմ. Հ. Բ. Սարգիսեան, Մայր Ցուցակ եւն, թ. 52, 114 եւն) — եւ նաեւ այլուր։ Երբ վերոյիշեալ Ճեմիլ բանադատուած էր իսլամնալ, փախստականք կրցած էին ազատել եկեղեցւոյն հին մագաղաթեայ երկաթագիր Աւետարանը, որ անոր համար "Ճեմիլ-Աւետարան" կը կոչուէր։ Ան վերանորոգուած էր 1621ին։ Թուրք գրաքննութիւնը չէր ներեր որ հրատարակուէր գոնէ այս նորոգման պատմական յիշատակարանը, որ "կրօնական յուզիչ բաներ կ'աւանդէ[1]"։ Սպերի Մաթուսանց գիւղը գտնուած այս հին Ձեռագիրը թէ այժմ ինչ եղած է 1915ին աղէտքէն ետքը՝ չենք գիտեր։

---

[1] Համմ. Մ. Սանոսեան, Սպերի հնութիւնները. ի Թերթին "Արեւելք" 1904, թ. 5579։

Վենետկոյ Թ. 52 ձեռագիրը գրած է Կարապետ Ջուղայեցի, որ՝ ինչպէս ինքը կը պատմէ՝ Մովսէս Կաթողիկոսի չուզելով անսալ, փախած “եկայ ի Համշէն„ եւ հոս“ ի յերկիրն Համշէն, ի վիճակս Խաչէքարոյ„ կը գրէ այն Սաղմոսարանը ՌՀԹ (= 1630) թուին. իսկ այս ձեռագրին նկարող Գրիգորը կը խնդրէ յիշել “զպոնտացի Տէր Աւետիս, առաքելանման եպիսկոպոսն„ եւն (Հ. Բ. Սարգսեան, “Ցուցակ„, սիւն 264—266)։ Այս թուականիս տակաւին լիովին հայ-քրիստոնեայ էր երկիրը, եւ ասկէ ետքն է որ Համշէնի Հայերը բռնադատուած են՝ նա եւ զանգուածային կերպով՝ մահմետական կրօնքն ընդունելու։ ԺԷ. դարու վերջերը սկսած, աւելի եւս ԺԸ դարուն ընթացքին մէջ տիրող եղած է մահմետականութիւնը։ Երբ Հ. Ղուկաս Վ. Ինճիճեան 1806ին կը հրատարակէր իւր աշխարհագրութիւնը[1], իրաց վիճակն այն էր որ մեծամասնութիւնն արդէն մահմետական եղած էր. բայց կային տակաւին քրիստոնեայք ալ, որոնց եկեղեցիները կանգուն էին, սակայն քահանայ

[1] “Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի„։ Մասն Ա, Հատ. Ա. յօդ., էջ 395—398։

չունէին. միայն յիշեալ Եղիովիտ գիւղին քահանայն կրնար տակաւին մերթ ընդ մերթ այցելել: Այս Եղիովիտ գիւղն ալ "այժմ ըստ կիսոյն դարձան ի տաճկութիւն»: Բնական էր որ բունի նորադարձներէն գոնէ "ոմանք կէսկէս են հաւատովք, արտաքուստ միայն ցուցանելով զտաճկութիւն» (= մահմետականութիւն): Համշէնի մահմետականացեալք "խօսին մինչէ-ցայժմ հայէրէն»: Իրերը շատ չէին փոխուած՝ երբ կը գրէր Հ. Մինաս Վ. Բժշկեան Տրապիզոնցի, որ անձամբ այցելած էր Սեւծովու ափերը[1]. "Խաչիքեար վանքը մեծ ուխտատեղի է», կ'ըսէ, "հայ եւ տաճիկ (մահմետական) վրան ուխտի կ'երթան» եւն: "Համշէնցիք կէսկէս են. շատը դարձած են (մահմետականացած). բայց քրիստոնէութեան սովորութիւնը կը պահեն, ժամոց եւ ողորմութիւն պակաս չին ըներ. գրեթէ ամէնքը վարդավառին եւ վերափոխման կ'երթան եկեղեցին, մոմ կը վառեն եւ մատաղ կ'ընեն իրենց պապերուն հոգուն համար. Ճօլօրը հայէրէն կը խօսին: Ասոնց մէկ մասը Խօսողանց եւ Սիւրմէնէ գնացին.

[1] «Պատմութիւն Պոնտոսի որ է Սեաւ Ծովու» Վենետ. 1819, յոդ. § 144, համմտ. նաեւ § 82:

Խօ-տօ-ղօ-նլը գնացողները քրիստոնեայ մնա-ցին„ եւն (էջ 97)։ Այս վերջինքս Ճանիկի Համշէնցիք են։ Նոյն աւանին մասին կը գրէ Բժշկեան. "Խօ-տօ-ղօ-նլը աւան մօտ է Զուրզունդայէ (— Հիրիկի կամ Իռիսի ծո-վախառնունքի մօտ —) բնակիչներն են Հայ Համշէնու եկած. եւ ամէնքը զինուոր գրված որդւոց որդի. եւ ունին զօրապետ Հայ իշխան, որ զիրենք կը կառավարէ. մարդէ ահ չունին. միայն Տէրէպէկին հետ պա-տերազմ կ'երթան. եւ զօրաւոր մարդիկ են„. (անդ՝ էջ 49)։ — Իսկ Սիւրմէնէ գացողները՝ որոնք քրիստոնեայ չմնացին, ոչ թէ այն քաղաքին մահմետական բնա-կիչքն են (— որոնք խառնուրդ են Հայ, Յոյն, Լազ եւն տարրերաց, հռչակուած իբր "ապստամբք եւ աւազակող„ Ինճիճեան, էջ 393 —) այլ անոր գաւառին եւ առ. հասարակ Սէ--Գէրէ Հայերն են, որոնց մասին այժմ քանի մը խօսք ըսել պէտք է։

Սէ--Գէր (Թրք. Kara-dere) կը կոչուին այն ձորերը, որոնք՝ վերը բարձր լեռնոտին վրայ Համշէնի դրացի, վարը ծո-վու կողմը դէպ ի Սիւրմէնէ կ'իջնան։ Բաւ-ական մեծ լեռնաշխարհ մըն է՝ բազմա-թիւ գիւղերով, որոնց Հայ բնակիչք նոյն-

պէս բռնադատուած էին խալամանալ ԺԸ դարուն։ Քոխ չէ այցելած այս հովիտները․ բայց կ'անուանէ գլխաւոր ձորին քանի մը գիւղերն այն կարաւանուղւոյն՝ որ հոս ծովէն ելնելով բարձր լեռնողը՝ կ'երթայ երկու օրուան մէջ դէպ ի Բաբերդ (Քոխ, էջ 4—5)։ Բանասէր մը՝ Ս․ Հայկունի այցելած է այս հայ-մահմետական գաւառը, հաւաքելով ազգագրական նիւթեր, մանաւանդ ի Թորոսլի[1] 1867—1868ին, եւ ի Փէրվան (Կիպերտ Pervana) 1878ին[2]։ Արդ Ս․ Հայկունի այս մահմետականաց մէջ ինք զինքը իբր հարազատ գիւղերու մէջ կը գտնէր, ամենայն ինչ հայ՝ բարքն ու կենցաղն եւ հայերէն լեզուն՝ մեծէն մինչեւ փոքր։ Այլէն գիւղէ "Աշըխ (= աշուղ) Վարդան„ երգչի մը յօրինած հայերէն երգերը, յատկապէս պարերգերը կ'երգէին հարսանիքներու ատեն, մանաւանդ ի Թըլէնջօր, (այժմ՝ Ծիմլա, Կիպերտ՝ Simla)։ Անցողակի նշանակենք

[1] Քօխ՝ Dorosli, Կիպերտ՝ Toroslu, բուն "Ս․ Թորոս„։

[2] Ս․ Հայկունի, "Կորած եւ մոռցուած Հայեր․ Սեւ-Գետացիք„, ի Թերթին "Արարատ„ Էջմ․ 1895, էջ 239 243 եւ 293—297․ բունի մահմետականացման մասը՝ հմմտ․ նաեւ Յ․ Մանանդեան եւ Հր․ Աճառեան, "Հայոց նոր վկաները, 1155—1843„։ Էջմ․ 1903, էջ 702—709․ ՛Տէր Կարապետ քահանայ Թորոսլեցի„։

Թէ Խոտրջրոյ երգերու հաւաքման մէջ կայ հատ մը, զոր յօրինած է 1810ին Համշէնցի Կրճէլ աւազակը[1]։

Արդ այս հայ գաւառին մահմետականացումն եղած է շատ արիւնալից կերպով, առաջնորդութեամբ Սիւրմէնէցի Ղուռու Փօղլի Մէհմէտ ազդեցիկ մոլլայի։ Ուղղակի զինեալ խուժանով յաջողած է ի վերջոյ հանիլ Թորոսլի, եւ զարհուրելի կոտորածներով բռնադատած է նախ բոլոր (իբր 100) գիւղերուն աւագները մահմետականալ, եւ այնուհետեւ մնացեալ հազարաւոր ժողովուրդը, որչափ չէր կրցած փախչիլ։ Հազարաւորներ կրցած են փախչիլ անկոխ անտառներէն դէպի միւս մերձակայ գաւառները (Տրապիզոն, Բաբերդ եւն)։ Այս դէպքը տեղի ունեցած է 1708—1710ին, եւ անկէ ի վեր Սեւ-Գետի հոծ հայութիւնը մահմետականացած է։ Նաեւ մերձաւոր՝ Շօմուրա շրջանին Մանտրա լերան անտառաշատ կողերուն վրայ կան այլեւայլ հայ-մահմետական գիւղեր, նոյնպէս ցայժմ հայախօս, մանաւանդ կանացի դասակարգը։

[1] Հ. Մատթէոս Հաճեան, "Երգեր, առակներ եւն եւն Խոտորջրոյ." Տփղիս 1904, էջ 31։

Բնականապէս այսպիսի բռնութեամբ իսլամացած ժողովուրդ մ'երկար ատեն կէս-կէս կը մնայ։ Այս բառով կը նշանակուին այս կողմերն անոնք՝ որ արտաքուստ ստիպուած են ո՛չ եւս մահմետական մնալ, — որովհետեւ Թուրքական եւ իսլամական օրէնքով իսլամացածի մը քրիստոնէութեան վերադարձի փորձն իսկ մահապարտութեան պատիժը կը կրէ. — բայց ներքուստ կը պահէ աւելի կամ նուազ երկար տեւողութեամբ յիշատակն անցելոյն եւ վառ ոգի մը ներքին քրիստոնէական եւ ազգային համոզման։ Մանաւանդ իգական սեռին մէջ, որ շփում չունի — նոյն իսկ իսլամական օրինօք — արտաքին մահմետական աշխարհի հետ՝ ի մասնաւորի այսպիսի կղզիացեալ հովիտներու մէջ շատ երկար կրնայ տեւել այսպիսի ոգի մը, եւ պահուիլ հայ լեզուն։ Նպաստաւոր պարագայից մէջ յոյն Եկեղեցին յաջողած էր Տրապիզոնի նահանգին այլեւայլ բռնի մահմետականներուն մէջ, որոնք նոյնպէս մեծ թիւ կը կազմեն, այսպէս ի Կռօմի, ծպտեալ քահանաներով, գաղտնի եկեղեցիներով վառ պահել ծածուկ քրիստոնէութիւնը։ Հայ Եկեղեցին՝ ինքնին անընդհատ հալածանաց մէջ՝ դիւրութիւն

չունէր, մանաւանդ այս դժուարամատոյց հովիտներուն մէջ այնպիսի սաստկութեամբ գործելու: Այսու հանդերձ երբեք չեն պակսած հոս ալ, նախ յիշեալ Տէր Կարապետի տնէն մինչեւ 1820, եւ յետոյ նաեւ 1840է ետքը առանձնական ուրիշ հայ քահանայք, որոնք ծպտեալ կ'երթային Սեւ-Գետ ու Համշէն. եւ եղած են "բէկ"եր՝ այս գաւառաց կիսանկախութեան շրջանին, որոնք դիւրութիւններ կ'ընծայէին: Համիտեան հալածանաց օրերէ ի վեր իրերն աւելի դժուարացած են. իսկ Թուրքերը ջանացին վերջերս դպրոցներ բանալով մէկ երկու գլխաւոր տեղեր՝ հայ մահմետականները նաեւ Թուրքացընել: Ասոր աշխատած են ի մասնաւորի նաեւ Օֆի մեծ ու փոքր "մոլաները", որ փոքր քաղաքի բնակիչք թէեւ յունախօս մնացած են եւ ծեքածուռ Թուրքերէն մը միայն գիտեն խօսիլ, շատ մոլեռանդ են, եւ իբր "մոլա" եւ իբր շրջուն քարոզիչներ՝ ջանացած են Պոնտական լեռնաշղթայի ամէն կողմը վերջնականապէս իսլամացընել եւ այն մահմետականացածները՝ որչափ կրնան՝ մոլեռանդ ընել:

Հայ լեզուի դէմ մաքառած են ար-

դիլելով եւ համոզելով թէ ուղղահաւատ մահմետականի համար մեղք է անհաւատի լեզուաւ խօսիլ։ Ասի հին հնարք մըն է վերջնականապէս Թուրքախօս դարձնելու մահմետականացած հայը, յոյնը, լազը, քիւրդը եւն։ Քոխ նկարագրական միջադէպ մը կը պատմէ Արդուինի մահմետականացած վրախօսներու բերնէն, որոնք կը ցաւէին թէ ստիպուած են այսպիսի մեղք մը գործելու, քանի որ այն լեզուն մօր կաթին հետ ծծած են. բայց քանի որ խղամութեան «[illegible]», կը յուսան թէ իրենց մեղք չի համարուիր դրախտին մէջ, եւ «Աստուծոյ եւ հրեշտակաց անհասկանալի չեն մնար» (Քոխ, էջ 167)։ Այսպիսի ըմբռնմանց տարածուելուն արդիւնքն եղած է ամէն տեղ լիովին Թուրքախօս դառնալը, ինչպէս եղած է Արդուինի շրջակայքը՝ բոլոր մահմետականացածներու մէջ։ Սակաւահող գաւառներու մէջ ի հարկէ տարածուած պանդխտութիւնը, զինուորական ծառայութիւնն եւ նման պարագայք արական դասակարգը շփման մէջ կը դնեն Թուրք տարրին հետ մեծ կենդրոններու մէջ (Կ. Պոլիս եւն)։ Ու ասի կ'ազդէ անոնց Թրքախօս

եւ երբեմն նաեւ մոլեռանդ ըլլալու։ Այսպէս կը տարածուի Թուրք լեզուն, զոր արդէն իբր պետական լեզու կը ստիպուին արք սորվիլ։ Համշէնի եւ Սեւ-Գետի կզզխացեալ գիւղքը, ասոնց հին հակակրութիւնը մահմետական լազին եւ յոյնին ու Թուրքին հանդէպ, որոնց հետ խնամութեան կապեր չէին հաստատեր, կրցած է այս գաւառները պահել վերջնական Թրքացմանէ եւ հայ լեզուն՝ բոլորովին կորսուելէ։ Ասի պիտի պատահի սակայն օր մը, եթէ շարունակեն արդի պայմանները եւ Թուրք մահմետական բռնապետական վարչութիւնը, ինչպէս նոյնը պատահած է անթիւ ուրիշ տեղեր, ուր հայ եւ յոյն եւ ուրիշ ազգեր գոնէ արտաքուստ լիովին Թրքացած են՝ նախ մահմետականալէն ետքը։ Ի հարկէ նաեւ ուրիշ տեղերու ալ շարք մը կայ, ուր “Թրքութիւնը„ միայն արտաքուստ է։

Ուրիշ բռնութեանց շնորհիւ է որ այսօր կան ընդարձակ աշխարհներ, ուր մանաւանդ յոյն եւ հայ ժողովուրդը, թէեւ կրցած է քրիստոնեայ մնալ, Թրքախօս եղած է, այնպէս որ Թուրքերէնն ընտանեկան լեզու եղած է. ինչպէս որ ու-

նինք նաեւ շատ բազմաթիւ քրդախօս, արաբախօս եւ վրախօս Հայեր։

Համշէնցին, մահմետական թէ քրիստոնեայ, ունի ինքնուրոյն հայ բարբառ մը[1]։ Աճառեան, որ առանձին կերպով ուսումնասիրած է այս բարբառը 1910ին, կը շեշտէ թէ Համշէնի եւ Սեւ-Գետի Հայերը՝ “տասնեակ հազարաւորներ բռնի մահմետական դարձան եւ մինչեւ այսօր ալ կը համարուին տաճիկ, թէեւ իրենց հին հայկական սովորութիւններն եւ պապենի հայ բարբառը կենդանի կը պահեն„։ Համշէնի անմիջական դրացին՝ լիովին հայ մնացած Խոտորջուր տարբեր հայերէն բարբառ մ'ունի, թէեւ նմանութեան այլեւայլ կէտեր կան։

Պոնտական շղթայիս այս հովիտները հիանալի են բնական գեղեցկութեամբ եւ յաճախ մրգաւէտ. բայց՝ մանաւանդ բարձրադիր անտառախիտ ձորերը՝ մշակութեան հող բաւական չունին։ Այսօր բաց ի ծխախոտէ՝ գլխաւորաբար “լազուտ„ (=եգիպտացորեան) է մշակուածը, հազիւ բաւական ժողովրդեան։ Համշէնցին կանխաւ իսկ ստիպուած էր գաղթել։ Բայց մանաւանդ հա-

---

[1] Հմմտ. Հր. Աճառեան, “Հայ Բարբառագիտութիւն„, Մոսկուա 1911, էջ 184—198։

լածանքներն ու բռնի մահմետականացումը պատճառ եղած են հազարաւորներու ապաստանելու ուրիշ տեղեր։ Համշէնցին եւ Սեւ-Գետցին ասով տարածուած են Տրապիզոնի շրջակայքէն սկսեալ մինչեւ Սամսոնի ու Սինոպի մօտերը, հիմնած են գիւղեր, ու Տրապիզոնի անմիջական կից հայ գիւղերն իսկ Համշէնցւոց բարբառով կը խօսին։ Նորագոյն ժամանակներս՝ նեղուած այս տեղեր ալ՝ նոր հոսանք մը սկսած է շատ աւելի հեռուները գաղթելու։ Առանձնապէս Նիկոմեդիոյ շրջանին մէջ կայ Համշէնցւոց բաւական գաղութ մը (1870ին սկսած Օրտուի շրջանէ եւ յետոյ՝ ուրիշ կողմերէ. հմմտ. այս մասին յատուկ երկս՝ Մինաս Գ. Գասապեան [Փարհատ] "Հայերը Նիկոմեդիոյ գաւառին մէջ." Պարտիզակ 1913. "Մանիշակ" գիւղը հիմնուած է 1892ին, Արամ-գիւղը 1873ին եւն)։ Կարեւոր պարագայ մ'այն է որ հայ ու քրիստոնեայ Համշէնցւոյն հետեւած է հայ-մահմետական Համշէնցին, եւ հիմնած է նաեւ անխառն հայախօս գիւղեր։ Այսպէս Համշէնցւոց Գէղամ քրիստոնեայ գիւղէն քով հիմնած են՝ "Աչմա պաշը" մահմետական գիւղը, ուր ալք իսկ հայերէն կը խօսին, որչափ ալ օտարներու առջեւ զգուշանան ասկէ. (— այս երեւոյթը

կայ ընդհանրապէս մահմետականացած Հայերուն մէջ․ —) իսկ կանայք հայերէնէ զատ ուրիշ լեզու չեն գիտեր։ Նոյնպէս հայախօս են Նէնիճէ եւ Գարա-Թաւուգ գիւղերը, որոնց համշէնցի հայ-մահմետականք Համշէնէ նախ գաղթած էին Լազստանի Խոփէ քաղաքը, անկէ եկած են հոս։ Նէնիճէի մօտ ուրիշ գիւղ մը՝ “Պաշ-Համշէնլի” կը ցուցընէ թէ Համշէնի գլխաւոր աւանէն էին իրենց նախնիք․ բայց ասոնց միայն ծերերը տակաւին հայախօս են։ Գասապեան կը գտնէր թէ “այս հայ մահմետականք շատ մաքուր հայերէն բարբառ մը կը խօսին, նոյն իսկ աւելի մաքուր քան Հայ-Լազերունը” (համմտ․ անդ, էջ 143—147, “Մահմետական Հայեր” գլուխը)։ “Հայ-Լազ” ըսելով կը հասկընայ Համշէնցի ու Սեւ-Գետցի հայ-քրիստոնեայ գաղթականները, յորջորջանք մը՝ զոր վերը մեկնեցինք։

Գաղթականութեան նոր հոսանք մը, մանաւանդ Համիտի հալածանաց օրերէն վեր, ծաւալած է դէպի Սեւ-ծովու Կովկասեան ափերը, յատկապէս Սուխումի շրջանը։ Համշէնցիք հիմնած են այլեւայլ գիւղեր եւ բազմաթիւ կայաններ, եւ իրենց ջանասիրութեամբ մշակած են խոպան հո-

ղէր, եւ ծաղկեցուցած մանաւանդ ծխախոտի մշակութիւնը։ Ռուսական ծխախոտի այս կողմանց ծաղկման մէջ գլխաւոր բաժինն ասոնք ունին։ Ասոնց մասին ընդարձակօրէն գրած է Յ. Մուրատեան[1], որ Սեւ-ծովու այս ափերը սփռուած Համշէնցւոց թիւը կը դնէ իբր 2500 տնէ աւելի, իբր 15.000 անձ։ Ասկէ յամենայն դէպս շատ աւելի է Թուրքիոյ մէջ ապրող քրիստոնեայ Համշէնցւոց թիւը. միայն Տրապիզոնի շրջակայքն իբր 20 գիւղ կը հաշուին։ Իսկ մահմետական եղածներուն թիւն ալ ի հարկէ մեծ է։ Բուն Համշէնի համար Քոխ իւր ժամանակ կ՚ըսէր իբր 8000 հոգի (Քոխ, էջ 25)։ Սեւ-Գետի եւ յարակից Նօմուրայի շրջանին մահմետականացած Հայերն արդէն այն ժամանակ գոնէ այնչափ ըլլալու էին։ Ուրիշ աղբիւր մը մինչեւ անգամ Համշէնի համար իբր 10.000 տուն կ՚ըսէ, Սեւ-Գետի իբր 6000 տուն, ո՛չ թէ անձ։ Թուրքիոյ մէջ սակայն վիճակագրականք ընդհանրապէս գնահատական միայն արժէք ունին. կառավարութեան այն իբր թէ պաշտօնականք

---

[1] “Համշէնցի Հայեր ազգագրական նիւթեր։„ Տփղ. 1901. Նախ՝ “Ազգագրական Հանդէս„. Գիրք Ե.—Զ., 1898—1900։

ալ յաճախ կամայական ու դիտումնաւոր են։ Տայոց աշխարհի մեր ուսումնասիրութեանց առթիւ յաճախ գտանք այս մասին փաստեր։ Ցամենայն դէպս թէ քրիստոնեայ եւ թէ մահմետականացած Համշէնցիք եւ Սեւ-Գետցիք բաւական մեծ թիւ մը կը կազմեն։

## Գ.

### Բաբերդ ու Սպեր։

Պոնտական լեռնաշղթային ջրաբաշխ գագաթներէն սկսեալ դէպ ի հարաւ իջնող ձորերուն ստորոտէն կ'անցնի Ճորոխ, որ Կարնոյ մօտերէն բղխելով շրջան մը կ'ընէ մինչեւ Բաբերդ, դառնալու համար դէպ ի Սպեր, Բերդագրակ ու Արդուին եւ այնուհետեւ դէպ ի Սեւ-ծով։ Ընդհանուր առմամբ Սեւ-Գետի թիկունքը կը վերաբերէր Բարձր-Հայոց (Բաբերդ-Սպեր), Համշէնի թիկունքը՝ Տայոց (Արսեաց-փոր) գաւառներուն։

Բաբերդի եւ Սպերի, Բագրատունեաց հայ թագակապ ասպետաց այս հին նիստերուն[1] պատմութիւնը հին ու երկար է։ Այս տեղեաց հայ-մահմետականաց իրերն

[1] Հմմտ. Բուզ. Ե, խզ. ու Խոր. Բ, լէ եւն։

ալ բաւական տարբեր էին անով որ այս տեղերը կանուխէն ոտնակոխ եղան Սելջուկեանց։ Բայց նաեւ Բաբերդ ու Սպեր աւելի երկար վայելեցին քրիստոնեայ վարչութիւն մը քան Հայաստանի շատ ուրիշ մասերը։ Պրոկոպիոս Յուստինիանու շինութեանց (յաճախ աւելի վերանորոգութեանց) մէջ կը յիշէ նաեւ Բաբերդ, տակաւին հին ձեւով Բայբերդ, Βαιβερδὼν գրելով (de Aedificiis, III, 4)․ մինչդեռ Գէորգ Կեդրենոս՝ թէեւ ձեւը կը պահէ, արդէն արդի արեւմտահայ արտասանութեամբ կը գրէ Παίπερτε[1], երբ կը պատմէ Վարդ Բոյլի (Bardas Boïlas) դրդած այն ապստամբութիւնը՝ որուն ձեռնարկեցին երկու աւագներ, Ադրիանոս Խաղտեցի (Χαλδαῖος) եւ Տաճատ Հայ (Τατζάτης ὁ Ἀρμένιος), որոնք տիրեցին բերդին․ բայց այն ժամանակի նշանաւոր հայ զօրավար Յովհաննէս, բիւզանդացիներէն “Կուրկուաս„ յորջորջուած (ὁ Κουρκούας) շուտով ընկճեց ապստամբութիւնը (924ին)։ Տուղրիլի արշաւանքէն պատահաբար ազատեցաւ Բաբերդ։ Սելջուկեան այս առաջին գրոհները հասած էին “մինչեւ

[1] Georg Cedrenus, ed. Bekker. Bonnae, 1839, Vol. II, p. 302.

ի լեառն որ կոչի Պարխար„, "մինչեւ յան-
տառն Ճանեթոյ„, եւ "որ ի Տայսն մտին,
առեալ զերկիրն եւ հասեալք մինչեւ ի գետն
մեծ որ կոչի Ճորոխ եւ ընդ գետոյն դար-
ձեալ իջին յաշխարհն Խաղտեաց, եւ ա-
ռեալ զառ եւ զգերի գաւառին՝ դարձան,
եւ եկեալ մինչեւ ի բերդաքաղաքն որ կոչի
Բաբերդ„. բայց "հանդիպի եւ անդ գունդ
մի ի զօրացն Հոռոմոց որ կոչին փրանկք,
որք յանդէտս ի դիմի հարեալք ճակատե-
ցան„: Փրանկ վարձկանազօրը յաղթեց եւ
"զառ եւ զգերի զամենայն թափեցին„ եւն
(Արիստ. Լաստիվերտացի, գլ. ԺԶ): Ասի
եղած է 1054ին: Բայց Սելջուկեան հեղեղը
ի վերջոյ ողողեց հոս ալ: Եւ Բաբերդ միջոց
մ'եղած է մինչեւ անգամ նիստ Սելջուկ
ամիրայից: Բերդը վերանորոգած է Աբուլ-
Հարիս Տուղրիլ՝ Ղոնիոյ տնէն, Լուլու հա-
զարապետին ձեռօք, 1213ին, ինչպէս արա-
բական արձանագրութիւնք կը ցուցնեն[1]:
Իրերը լաւ կը բացատրէ՝ ի միջի անթիւ
այլոց՝ պատմականօք լի յիշատակարան մը

[1] Հմմտ. C. F. Lehmann-Haupt, Materialien zur älteren Geschichte Armeniens etc., Berlin 1907, p. 125ff. Max v. Berchem, Arabische Inschriften aus Armenien etc., յատկապէս՝ p. 152ff. Baiburt.

ձեռագիր Ճառընտրի մը, որ 1204ին գրուած է, եւ որուն ստացիչն էր Աստուածատուր “ռայիս (պետ ազգայնոց) Բայբերդոյ[1]„։ Սպերի մասին ալ, որուն պատմականը չենք ուզեր ընել, կը բաւէ յիշել նոյն իսկ Վրական Տարեգրոց երկարօրէն պատմածը Վախթանգայ Գ. օրերուն համար (1301—1307) թէ վաչկատուն Թուրքերու մեծ բազմութիւն մը՝ առաջնորդութեամբ “Ազատ-Մոսէ„ անձին, իբր 60.000 հոգի, ամառները կ'ողողէին Պարխար լեռները, կ'ապատակէին ի Տայս եւ աւելի հեռուները, իսկ իրենց ձմերոցն էր “Պոնտոսի մօտերը„, յատկապէս “Սպեր եւ Բաբերդ[2]„ են։ Սպեր ու Բաբերդ ԺԵ. դարու մէջ Պարսից եւ Օսմանցւոց յաճախակի պատերազմաց ասպարէզ եղած են եւ հրոյ, սրոյ ու գերութեան մատնուած։ Օսմանցիք զԲաբերդ առին 1473ին։

Սպեր ու Բաբերդ ուրեմն երկար ժամանակ ունէին մահմետական բռնութիւն կրելու, եւ կրած են ամէն տեսակ՝ ինչպէս ամէն ուրիշ կողման Հայերը։ Անթիւ փաստերու մէջ յիշենք հատ մը, զոր տեղւոյն

---

[1] Հմմտ. Հ. Ղեւոնդ Վ. Ալիշան, “Հայապատում„ Վենետիկ 1901, էջ 448—451։

[2] Հմմտ. Brosset, Histoire de la Géorgie etc., Pétersbourg 1858, Vol. I, 1, p. 626—630.

գաղթականք հետերնին տարած են Ջաւախի Ծանձղա գիւղը։ Մաշտոցի մը յիշատակարանը՝ գրուած է 1694ի, ուր կը նկարագրուի թէ “իբրեւ զնաւ մրրկեալ եւ ալեկոծեալ կայաք ի ձեռս անօրինացն եւ գազանաբարոյ բռնաւորացն„, որոնք “անխտիր թալանէին եւ կողոպտէին[1]„ եւն։ Հակառակ այս ամէնուն նոյն միջոցին՝ ԺԷ դարուն վերջերը գրող Յակոբ Կարնեցի, որ իւր ժամանակի Կարնոյ օսմ. ընդարձակ փաշայութեան երկիրներուն մասին համառօտ՝ բայց հետաքրքրական տեղագրութիւն մը կը գրէ, Բաբերդի գաւառը կ՚որակէ “քաղցր եւ համեղ երկիր եւ Հայոց բնակարան„. բնակիչները՝ “մարդասէրք եւ հիւրընկալք քրիստոնեայք„։ Իսկ Սպերի գաւառի մասին կը գրէ թէ “բնակիչք երկրին բովանդակ Հայք„. բայց նաեւ թէ “եկեղեցիք բազում, որ այժմ աւերեալ եւ ամայի կան ի ձեռս Տաճկաց„[2]։ Արդէն այս էր Թուրքաց ոճը, ուր ոտք կը կոխէին, գրաւել նախ վանքերու,

---

[1] Լալայեան, Ջաւախք. 314—315։

[2] Յակոբ Կարնեցի, „Տեղագիր Վերին Հայոց.„ Հրատ. Կ. Կոստանեանց։ Էջմ. 1903, յոդ. էջ 15—17։ Գաղ. թրգմ. Erzeroum ou Topographie de la Haute-Arménie. Texte arménien de Hakovb Karnetzi etc. traduit et annoté par Frédéric Macler, Paris 1919.

եկեղեցեաց, բայց նաեւ առանձնական ընդարձակ հողերը, տալով Ենիչէրիներու եւ այլոց, որոնք մէկ մէկ բէկ ու բռնապետ կ'ըլլային գիւղերուն վրայ։ Բռնի մահմետականացման գլխաւոր ազդակներէն մին էր այս։

Այսօր իրերը մասամբ փոխուած են անով որ Բաբերդ ու Սպեր մասնակցած են Կարնոյ նահանգին այն մեծ գաղթականութեան, որ տեղի ունեցաւ 1828ի ռուսթրքական պատերազմէն ետքը, (Ռուսք առին Բաբերդն ալ, բերդը կործանեցին,) դիմելով դէպի Ախալցխա եւն։ Գաղթին առաջնորդն էր Կարնոյ Կարապետ եպիսկոպոսը, որ հայրենեօք էր Հոնուացի։ Սպերի այս մեծ ձորը՝ Հոնուն՝ այսուհետեւ մեծամասնութեամբ մահմետական եղած է. բայց գոնէ մնացած է հայ հասարակութիւն մ'ալ բաւական թուով, թէեւ փոքր՝ համեմատութեամբ մահմետականացածներուն։ Բաբերդի գաւառը հողագործութեան յարմար ըլլալով՝ թուրք կառավարութիւնը հոն զետեղած է գիտմամբ մաս մը Կովկասէ եկած գաղթականաց, որոնց շատը 1878ի պատերազմէն ետքը Ռուսաց ձեռքը մնացած Կարսի շրջանէն են։ Բաբերդի մահմետականաց մէկ

մասն ուրեմն նոր եկուոր եւ օտար է, միւս մասը՝ հայ-մահմետական։ Բաբերդ բազմաթիւ հայ գիւղերով հայաշատ գաւառ մը մնացած է. եւ ասոր համար Երիտասարդ Թուրքերու առանձինն կատաղութեան զոհ եղաւ 1915ի տարագրութեան ատեն, որոնք հոս ուրոյն կոտորած ալ կազմակերպած են[1]։

Ընդհակառակն Սպեր՝ թէեւ մրգաւէտ ու արօտաշատ, բաւականաչափ մշակելի հող չունի. ուստի հոս եկուոր օտար մահմետական շատ քիչ է։ Հայ գիւղերը, թէեւ թուով բաւական բազմաթիւ, յիշեալ գաղթականութեան շնորհիւ նուազ մարդաշատ են։ Հայերէն ձեռագրաց քիչ հաւաքածոյ կայ, ուր չգտնուին ձեռագիրներ՝ ինչպէս Բաբերդի, նոյնպէս Սպերի բազմաթիւ եկեղեցիներն ու վանքերը գրուած։ Ասոնց մեծ մասն այժմ աւերակ կամ ամայի է, եւ ուր կանգուն մնացած՝ յաճախ յարակից գիւղն արդէն մահմետականացած է։ Կը բաւէ օրինակ մը։ Ձեռագիր Յայսմաւուրք մը, որ Սպերի Այգեձոր գիւղը կը գտնուի,

---

[1] Հմմտ. The Treatement of Armenians. Documents presented etc. by Viscount Bryce. London 1916, p. 4, 13, 242 ff.

գրուած է 1687ին "ի Սպեր գաւառ, յանապատս որ կոչի Քաչչօրա-Վանք"։ Այս վանքն ի հարկէ նոյն է Սպերի նշանաւոր վանքին՝ Ս. Յովհաննու հետ. վանքը բնականապէս մնացած է, բայց Քարձոր արդէն մահմետական եղած է[1]։ Վանքին մերձաւոր արծաթի հանքերը, զորոնք Կիպերտ ալ քարտէսին վրայ կը նշանակէ, ի հարկէ շատոնց լքուած էին Քօխի անցած ատեն, որուն ըսած էին թէ անոնց շահագործողները յառաջ եղած էին մերձակայ Քարձորի եւ Տշաձորի (Քօխ՝ Dischadzor, Կ. Dischandzor) գիւղերու Հայերը։ Քօխ ալ՝ ուրիշ գիտնոց պէս՝ այն կարծիքէն է թէ հոս փնտռելու ենք այն ոսկեհանքը "Սիսպիրիտիս" գաւառի (ἐν Συσπιρίτιδι) Կամբալա տեղւոյ մօտերը (κατὰ τὰ Κάμβαλα), ուր Աղեքսանդր Մեծ խաւրեց Մեմնոն զօրավարը՝ ոսկին առնելու, ինչպէս կը գրէ Ստրաբոն (c. 529—530)։ Սակայն հաւանօրէն բոլորովին ուրիշ կողմ փնտռելու ենք այն տեղը։ Այս ամէնն՝ ինչպէս Քօխի այն կարծիքը թէ արդի Սպերի տեղն ըլլալու է Կամբալա, հոս քննութեան

1 Հմմտ. Մ. Սանասեան, ի թերթին "Արեւելք", Թ. 5579։

չենք առնուր[1]։ Որչափ ալ բաւական ծանօթ է Սպերի պատմութիւնը Հայ եւ բիւզանդեան աղբիւրներէ (Բիւզանդեանց ժամանակ ալ Սպերի Բագրատունիք քանիցս դեր խաղացած են), կան բնականապէս՝ ինչպէս մեր Հայրենեաց քիչ շատ ամէն կողմ՝ բաւական մութ կէտեր. օրինակի համար թէ ո՞ւր էր Բագրատունեաց "Արամանեակ,, բերդն ի Սպեր (Թովմ. Արծրունի, Պատմ. Գ, ժգ)։ Խնդիր մըն է նոյնպէս թէ ի՞նչ է այն "Նոր-քաղաք (Nor-kalak) զոր վրական Տարեգիրք՝ վերը յիշուած պատմութեան մէջ՝ ուրոյն կը յիշէն, երբ օրինակի համար կ'ըսեն թէ "Թուրքերէն միայն ոմանք փախան Սպերի քաղաքն ու բերդը, ուրիշներն ի Նոր-Քաղաք,, եւ այս վերջինը Բեկա Սպերէ վերադարձին աւերեց[2]։ Ի հարկէ "քաղաք,, շատ խիստ մտօք առնելու չէ այսպիսի աղբիւրներու եւ այս ձորախիտ տեղերուս համար։

Երբ Քօխ Սպերէ կ'անցնէր, Թուր-

---

[1] Քօխ բաւական ընդարձակ նկարագրած է Սպերի "նաեւ արդի աւերակաց մէջ մեծագործ բերդը,,, ինչպէս նաեւ իւր ուղղոյն վրայ եղած մասերը. Հմմտ. էջ 33—57, Սպեր այցելած են ուրիշներ ալ։

[2] Brosset, անդ, էջ 629—630։

քերը նոր ջնջած էին անոր կիսանկախ իշխանութիւնը, եւ ուղղակի Թուրք վարչութեան ենթարկած, բայց տակաւին ըմբոստ էր ժողովուրդը: Միւս կողմանէ իւր անցած գծին վրայ դէպ ի Կարմիրք՝ «Զաղկոց» հովիտը (Քոխ Sagus, Կ. Zagos) նոր մահմետական եղած էր (Քոխ, էջ 55): Հակառակ այս ամենուն՝ այսօր ալ Սպերի գաւառը Հայ նկարագիրը պահած է նաեւ անով որ գիւղերու, լերանց եւն բոլոր անուանք հայկական մնացած են: Շարք մը նշանակած է Կիպերտ ալ, ուր՝ թէեւ ոմանք ծանօթ թրքական աղաւաղմանց ձեւով են՝ ինքնին կը հասկցուին հայ անունները: Երբ օրինակի համար Պարխարի լեռնաշղթային մէկ մասին՝ Ճէմիլի Թիկունքը՝ իբր անուն կը կարդանք Kara Gtur-Dagh, հոս թրքերէն "Գաւառ" (սեւ) գործ չունի. այլ՝ ինչպէս „gtur" իսկ կը ցուցնէ, հայ Պարախտառ անունն է: Նոյնպիսի է՝ ի միջի այլոց Ճորոխի վրայ Արօխս գաւառի Kara Garmütsh գրուածը, որ "Քարաշարժոնք" է նոյն իսկ տեղւոյն այժմ մահմետականացածներուն բերանը: Ասոնց նման շատ են աղաւաղմունք ամէն կողմ, որուն պատճառն ոչ թէ հայ-մահմետականք են, որոնք

ուղեղ պահած են անունները, այլ Թուրք պաշտօնէութիւնը, որոնցմէ կը քաղեն ուղեւորք իրենց տեղեկութիւնները։

Դ.

Կիսկիմ եւ Թորթում։

Սպերի գաւառէն անդին՝ Ճորոխի ընթացքին վրայ, երկու ափանց հովիտները պարունակելով, կը գտնուի Հայաստանի Տայոց նահանգին հիւսիսային գաւառը "Արսեացփոր առ Պարխար լերամբն, ընդ որ իջանէ Ւոհ (=Ճորոխ) գալով ի Սպերայ" (Խոր. Աշխ.)։ Այսօր ալ Թէեւ պաշտօնական կեդրոնը կը համարուի Կէօսքէն (Կ. Kiskin), Թուրք վարչութիւնն իրականին փոխադրուած է մերձաւոր Արճէշ (Կ. Ersis), այնու որ աւելի խլամնացած է։ Քոխի այցելած ատեն, որ երկար նկարագրած է հոն ալ իւր ուղին[1], կիսանկախ գաւառիս կեդրոնն էր՝ Ճորոխի ձախ ափին վրայ Բէրդագրակ, որ Յակոբայ Կարնեցւոյ քով տակաւին կը գրուի "մինչեւ ի Բէրդն Ագրակ." (էջ 17)։ Կիպերտի քով անունն եղած է Pertekrek, Քոխ՝ Pertakrek։

[1] Հմմտ. Քօխ, էջ 57—100, 181—182։

Եթէ մեր պատմութեան մէջ Սպեր Բագրատունեաց գաւառ կը համարուի, Տայք ալ յաճախ կապուած են Մամիկոնեանց տան հետ։ Նոյն իսկ վերը յիշուած Հմայեակ Մամիկոնեանի դէպքը՝ ճիշդ այս տեղ Ճորոխի վրայ պատահած, արդէն վկայ է։ Կը բաւէ դարձեալ յիշել մեր պատմութեան ուրիշ միջադէպ մը։ Երբ Հայր մարդպետի սադրելով Ռշտունեաց եւ Արծրունեաց տոհմերն անձետ կ'ըլլային, Արտաւազդ եւ Վասակ Մամիկոնեանք այն տոհմերուն սնդեայ մանուկները "մէն մի յանթի հարեալք՝ ի դուրս գնացին„ եւ "չոգան յաշխարհն իւրեանց յամուրս Տայոց. եւ անդ նստան„ եւն (Բուզ. Գ, ժը. Դ, բ)։ Ուրիշ բերդ մ'ալ քիչ մ'ետքը կը յիշենք։ Յետոյ Մամիկոնեանք անհետ կ'ըլլան աշխարհէս, եւ հոս ալ կը տիրեն Բագրատունիք։ Այսօր հին հայկական այս գաւառը գոնէ խառն բնակչութիւն ունի։ Նախ Հունուտի եւ Համշէնի անմիջական դրացին՝ Քաջքարի հարաւային սարոտ տարածուող ընդարձակ ձորաշխարհը՝ Խոփջուր՝ անխառն հայ կթղ. գիւղախումբ մըն է, "եօթն„ իրականին շատ աւելի բազմաթիւ գիւղերով։ Այստեղ եւ ոչ անձ մը կայ մահմե-

տական. (Կիպերտի քով բաւական անորոշ գծուած է „Dörfer von Chodutshur“ ընդհանուր խորագրով)։ Նոյն քարտէսն ասկէ սխալ ամբողջ վերին լեռնամասը դարձեալ ընդարձակ սպիտակ բիծ մը միայն կը ներկայացընէ։ Խոտրջրոյ մաս կրնանք ըսել՝ անկէ Երանաւող լեռնով բաժնուած կ. “Խոտուջուր-Տաղ„ անյատուկ անուամբ, յարակից Մոխրչկոտ՝ որ նոյնպէս հայ-կաթ. է երեք գիւղերով. եւ գրեթէ անխառն է, դոյզն մահմետականացած թաղ մ'ունենալով. (Կիպերտ՝ „Machurgur“ անճիշդ, քիչ մ'աւելի մերձաւոր Քոխ՝ „Mogurgut“)։ Ասոնց դիմաց՝ Ճորոխի աջ ափին վրայ՝ նոյնպէս անխառն հայ-կաթղ. է Կարմիր (Կիպերտ եւ Քոխ միշտ կը գրեն „Karmenik“), այն գիւղն՝ որուն համար Քոխ լսած էր թէ „Firengi“ (փրանկ) գիւղ մըն է, բայց բնականապէս Հայեր էին հոն միայն։ Իրաւամբ կը դիտէ Քոխ թէ «Ասիոյ մէջ ազգերն յաճախ իրենց կրօնքին համեմատ կը զանազանուին քան իրենց ազգութեան»։ Ով որ Յունաց, Հայոց եւ Վրաց մէջ իրեն կրօնին հաւատարիմ մնացած է, այսպէս ալ կը կոչուի միշտ. բայց ով որ մահմետական եղած է, Թուրքիոյ

մէջ Օսմանլի հռչակեալ անունը կը կրէ„ եւն։ Կարմիրքի “Firengi հոս կաթողիկեայ (Katholik) մօտք հասկնալու է„ (Քոխ, էջ 57—58)։ Հայ է նոյնպէս Կուփրաշէն։ Ճորոխի երկու ափանց վրայ՝ այս ամբողջ զուտ հայ գիծը բաւական մեծ բնակչութիւն ունի։ Մնացեալ ձորերէն՝ մաս մը խառն բնակչութիւն ունի հայ-քրիստոնեայ եւ հայ-մահմետական (գլխաւորաբար Նիխաղ, Որջնհաղ, Կիսկիմ, Փրթիկներ եւն, այժմ նաեւ Արսիս)։ Միւսները դժբախտաբար լիովին մահմետականացած են։

Կիսկիմ (հին Բերդագրակ) գաւառի այս մահմետականացումն ալ տեղի ունեցած է ԺԸ դարուն վերջերը։ Ինճիճեանի գրած ատեն Բերդագրակի եկեղեցիները տակաւին կանգուն էին. եւ ձորի մը բնակիչք “Նորոգ տաճկացան„ (էջ 133)։ Նոյնպէս պատմած էին Քոխի նոյն իսկ մահմետականացածները։ Գաւառիս այս մահմետականք, կ'ըսէ, ԺԸ դարուն վերջերը տակաւին քրիստոնեայ էին. եւ գաւառին կիսանկախ իշխանը՝ ինկած էր հաւատոց համար եղած կռուին մէջ. որդին՝ մանուկ տիօք Կ. Պոլիս տարուած՝ մահմետական կրթուած էր եւ դարձած իւր հայրենի իշխանութեան։

Ասոր քով հիւր եղած էր Քոխ: «Ժողովրդեան մեծագոյն մասին դարձին (ի մահմետականութիւն) սկզբնաւորութիւնն եղած էր կոտորածով մը, ինչպէս ամէն տեղ՝ ուր Մահմետի վարդապետութիւնը պիտի մուծուէր» (Քոխ, էջ 75):

Քոխի անցած ատեն Ճորոխի գծին այն մասը, որ Թորթումի-Ջրոյ Ճորոխ թափուելէն ետքը դէպ ի Արդուին կ'երթայ, տակաւին կը վերաբերէր ուրոյն ընդարձակ գաւառի մը, որուն կենդրոնն էր նոյն Արդուին (Քոխ, էջ 81—82): Ինճիճեան երկու գաւառ կը բաժնէ, Արդուին եւ Պարխալ (Ինճ., էջ 124, 130—132): Յամենայն դէպս գոնէ Ճորոխի բուն հովիտը մինչեւ Արդուինի մօտերը՝ Տայոց կը վերաբերէր: Եւ այստեղ՝ Ճորոխի աջ ափին վրայ է արդի մահմետականացած գիւղը Իշխան (Կիպերտ՝ Irchan). Կիպերտ այստեղ նշանակած է իրաւամբ Մամիկոնեանց Իշխանի բերդը, որուն մասին մեր հին պատմութիւնն ողբերգական դրուագ մը պահած է (Փաւստոս Բուզ. Դ, ժը): Պատմագրին խօսքը կը ցուցընէ թէ Մամիկոնեանք Ճորոխի այս կողմն ալ մեծ կալուածներ ունէին: Որովհետեւ Վասակ Մամիկոնեան իւր գնդով

կը գտնէր իւր եղբայրը զՎարդան Մամիկոնեան հօն "ջէրոմ գաւառին է Տայս, յիւր ամուր բերդին՝ որում անուն Երախանի կոչի„: Հայ անունները կը հասնին յամենայն դէպս գոնէ մինչեւ Արդուին: Այս կողմերը կը սահմանակցէին նաեւ Տայոց նահանգն ու Գուգարաց նահանգի Կղարջք գաւառը: Արդուինի մօտերէն սկսեալ, ինչպէս սահմանագլուխներու բնակչութիւնը սովորաբար կ՚ըլլայ, արդէն հին ժամանակ խառն բնակչութիւն մը գտնուած ըլլալու է: Արդուին այսօր հայ քաղաք մըն է. բայց դէպ ի ծով շրջակայ մահմետականաց մեծ մասն այլ եւս հայ-մահմետական չէ:

Տայոց աշխարհի միւս բոլոր գաւառները (— բաց ի Կողէ, որ Կուրի ականց վրայ է, —) կը գտնուին այն երկու գետոց աւազաններուն մէջ, որոնք այսօր ընդհանուր առմամբ կը կոչուին Թորթումի-Ջուր եւ Օլթիի-Ջուր: Ասոնք լեռնագծով մ՚իրարմէ բաժնուած՝ ուրոյն եւ ուրոյն կ՚ընթանան. բայց ի վերջոյ կը միանան եւ իբր մէկ գետ Ճորոխ կը թափուին, գրեթէ այնչափ շատաջուր՝ որչափ Սպերէ եկող Ճորոխն է: Թորթում գաւառին կը վերաբերի հարաւային երեսն այն լեռնագծին, որուն հիւ-

սիսային երեսը Կիսկիմի գաւառին է, եւ ուր կը գտնուին Ճորոխի աջ ափի բոլոր հովիտները, զորոնք յիշեցինք։ Այս լեռնագիծը կը կոչուի Հաչքէ-տաղ (— Կիպերդ ջուրի անունս —) այն գլխաւոր լեռնանցքէն առեալ, ուսկից կ'անցնէր հին ուղին ալ՝ իջնալով Ընկուզեկի (Կ. „Jüngüzek“) ձորէն դէպ ի ձորաբերանը կեցած սեպաբերձ համանուն բերդը, որ Թորթումի գլխաւոր հովտին մէջ է։ Անցողակի նշանակենք որ այս կողմերը ձորաբերանները “Դուռ„ (“Զորդուռ„) կոչել սովորութիւն է։ Ռազմագիտական տեսակէտով վերջերս շինուած էր խճուղի մը, որ Կարնէն կ'անցնէր Կարնոյ-կիրճը, եւ Զաբել լեռնանցքը ելլելով՝ կ'իջնար Թորթումի գլխաւոր հովիտը, դէպ ի Արսիս հասնելու դիտաւորութեամբ։ Այս գլխաւոր հովիտը կը սկսի այն լեռնաշղթայէն, որ Կարնոյ դաշտը հիւսիսէն կը պատէ, հնութեան Կապոյտ լերինք, այժմ՝ Թուրքերէն Դումլի կոչուած, Հայերէն՝ Եփրատայ աղբերականց մասին աւանդութենէ մ'առեալ՝ Խաչափայտի լեռներ։ Ասոր գագաթներէն, որ ջրաբաշխ են Եփրատայ եւ Ճորոխի, Թորթում կ'երեւայ իբր բարձր լեռներէ պատուած աշխարհ մը, որուն

բոլոր ձորերը՝ բարձրադիր եւ երբեմն բաւական ընդարձակ լեռնադաշտերէ իջնալով՝ ի վերջոյ կ'իջնան այն գլխաւոր հովիտը, որ ընդհանուր առմամբ հարաւ-արեւմուտքէն դէպ ի հիւսիս-արեւելք կ'ընթանայ։ Հովտին գետը՝ Թորթումի-Ջուր, որ կը հաւաքէ բոլոր ձորերուն ջուրը, ի վերջոյ կը կազմէ Թորթումի գեղեցիկ լիճը, որ կազմուած երկրաշարժով մը, Խարս լերան մէկ մասին փլուզմամբ՝ փակելով ձորին ընթացքը։ Ծովակին խորագոյն մասն է Չըխէն (կ. „Chyk“) գիւղի մօտ։ Ջուրն ասոր վրայէն իւր ճամբան բացած է, եւ կը ձեւացընէ աշխարհիս ամենագեղեցիկ եւ բարձրագոյն ջրվէժներէն մին՝ Թեւ հայ գիւղին մօտերը. եւ անկէ ետքը կը միանայ Օլթի-Ջրոյն հետ։

Հին պատմական աշխարհ մըն է, ինչպէս միւսներն ալ՝ զոր յիշեցինք, լի կանգուն ու աւերակ եկեղեցիներով, հին բերդերով եւն։ Ի զուր չէ որ մեր նախնիք քանիցս կը կրկնեն "ամուրք Տայոց„ բացատրութիւնը։ Բարեբախտութիւն է որ մահմետականացման ատեն ամբողջովին կամ մասամբ մզկիթի փոխուելով՝ կործանմանէ ազատած են, հին եկեղեցիներ, մինչդեռ Օլթի-Ջրոյ աւազանին Բանակի կամ Բանակերտի հոյա-

կերտ եկեղեցին Քոխի ատեն տակաւին կանգուն, բայց ամայի լքուած (Քոխ, էջ 243 – 246), այժմ աւերակակոյտ մըն է։ Քոխ այս եկեղեցին կը կոչէ «ամենագեղեցիկն ու ամենավսեմն, զոր այս տեսակին տեսած եմ ամբողջ արեւելքի մէջ, Կ. Պոլիսն ի բաց առեալ»։ Ասի կը յիշեցընէ արդէն կանուխէն Յակոբայ Կարնեցւոյ գրածը որ կը յիշէ «մեծամեծ վանորայք. այս ձորին «ի գիւղն Խախու, Ոշկ, եւ Իշխան, որք յար է— նման ոչ գոյ նոցա, բայց թէ լինի միայն Սուրբ Սոփի ի Կոստանդինուպոլիս» (էջ 17)։ Իշխանի մասին լսած էր Քոխ ալ թէ Բանակսի եկեղեցւոյ նման՝ բայց աւելի մեծ է։ Ինքը չէր կրցած այցելել։ Իշխան գիւղը կը գտնուի Թորթումի-Ջրոյ Օլթի-Ջրոյ հետ միացման կէտին մօտերը. եւ պատմութեան մէջ («Իշխանաց-գիւղ») անով աւելի կը յիշուի որ անկէ էր Ներսէս Գ. կաթուղիկոսը (641—661) «Շինող» կոչուած, նշանաւոր իր եկեղեցեաց շինութեամբ, ի մասնաւորի «Զուարթնոց»ի, եւ կաթողիկոսանալէն ետքն ալ միջոց մը հոս վերադարձած ապրեցաւ[1]։ Ոշկի

[1] Իւր շինութեանց եւ Իշխանի եկեղեցւոյ ալ մասին համեմատէ այժմ Jos. Strzygowski, Die

(Գ. Oshk) գեղակերտ շինութիւնք ոչ թէ բուն գիւղին մէջ են, այլ անոր ձորին վերնակողմը, յՈշկ-Վանք (այսպէս կը կոչեն նաեւ տեղացիք, Գ. լոկ „Vank“)։ Գեղաշէն եկեղեցին թէեւ կանգուն՝ արդէն փնասուած է, նոյնպէս միւս գեղեցիկ շինութիւնք, ի մասնաւորի շիրիմ-մատուռներու շարք մը, որոնք իբր բնակարան եղած են այսօր։ Ոշկ (ոչ թէ "Ողկ„[1]) նոր ձեւ մըն է. այս անուանս հնագոյն ձեւը կը յիշուի պատմութեան մէջ՝ Աշունք[2]։ Ամենագեղեցիկն է Խախուռայ եկեղեցին՝ երբեմն նշանաւոր ուխտատեղի, Վխիկ (Գ. Vychyk) հովտին կողմնակի ձորոյն սկիզբը։ — Գեղեցիկ է նաեւ եկեղեցին յԷգրէկ (Գ. "Ekrek„). Թողլով յիշել ուրիշ նուազ կարեւորները։ Եթէ փաստի պէտք ըլլար՝ ասոնք առանձինն կը բաւէին ցուցընելու թէ ինչ շէն քրիստոնեայ աշխարհ մըն էր։ Կ'երեւայ թէ յԱգրակ 1455ի գրուած

---

Baukunst der Armenier und Europa, Bd. I—II, Wien 1918, p. 108 ff., 486 ff., 682 ff.

[1] Յակոբ Կարնեցւոյ հրատարակութեան մէջ սխալ տպուած է "Ողկ„. անկէ Macler (p. 24) շփոթելով կարծած է թէ նոյն ըլլայ "Ողական„ բերդին հետ։ Բայց Ողական Արածանւոյ վրայ է ի Տարօն։

[2] Վարդան պատմ., տպ. Վենետ. 1862, էջ 85։

ըլլայ այն Աւետարանը, որ իբր գաւառներ կը յիշէ «ի գաւառս Խախուոյ եւ Թորթոմայ»։[1] Ասոնք ուրիշ անուններով կը համապատասխանեն հին գաւառներուս Ազորդափոր եւ Ոտաղէ։ Առաջնոյն անունը պահած է այսօր ալ համանուն գիւղը՝ Ազորդ (Կ. «Azor»)։ Անցողակի նկատենք թէ տարօրինակ կ'ըլլար՝ ինչպէս ըրած են բանասիրաց ոմանք, ասոր հետ կապել «աշխարհն Ազօրդէ» (կամ Ազորդէ) եւ «ամուրն Հաւատմէկ» (Արիս. Լաստիվերտացի. ԳԼ, Ա; եւ ԺԸ, Ստեփաննոս Ասողիկ Գ, խգ) ուղղելով «Ազորդէ»։ Եթէ Վասիլ կայսեր բանակը մինչեւ այս խորաձորը հասած էր, ինչպէս յանկարծ այնուհետեւ «անցանէ ընդ Հարք եւ ընդ Մանազկերտ» (Լաստիվերտացի) եւ ինչպէս հոս կու գար, երբ ճամբան էր «ընդ մէջ Հաշտենից, Ծոփաց եւ Խորձենոյ» եւ «հասանէ ի գաւառն Արշամունեաց», անկէ՝ Հաւճիճ (Ասողիկ)։ Իսկ Ոտաղէ այսօր մոռցուած է. անոր տեղ բռնած է Թորթում, որ անուն էր բերդին եւ անոր ոտքն եղող փոքր գիւղաքաղաքին կամ աւելի՝ աւանին։ Ասի այժմ կենդրոն

[1] Հմմտ. Ղեւոնդ Վ. Փիրղալեմեան, «Նօտարք Հայոց», Կ. Պ. 1888, Թ. 204, էջ 179։

ըլլալով՝ իր անունը տուած է ամբողջին՝ Թուզլուան։

Ինճիճեանի գրած ատեն՝ "պատմի զնախկին հայկազուն բնակչաց Թորթումայ թէ ձանձրացեալք ի բռնութենէ եւ ի զրկանաց, դարձան առ հասարակ ի կրօնս տաճկաց„. իսկ գիւղերն՝ "ըստ մասին բնակեալ ի Հայոց եւ ըստ մասին ի Տաճկաց„ (էջ 93—94)։ Այսօր իրերն աւելի յոռեցած են. բայց եւ այնպէս այսօր ալ այս աշխարհը գոնէ խառն բնակչութիւն ունի. եւ հայ գիւղերու շարք մը կայ, մասամբ խառն՝ մեծ մասամբ անխառն բնակչութեամբ, գաւառին ամէն կողմը, գիւղերէն ոմանք նաեւ մեծ բնակչութեամբ։ Այսպէս Խոտախոա տակաւին մեծաւ մասամբ հայ է։ Բայց մինչ Ապռնէս (Կ. Abernes) հայ է, այլ եւս չէ դիմացի Քըշխա մարդաշատ ձորը (Կ. Kyscha)։ Տակաւին 1880ի յօրինուած վիճակացոյց մը Թորթումի հայ եւ մահմետականացած գիւղերու՝ կը նշանակէր Քցխա իբր 800 տնով քրիստոնեայ ձոր մը[1]։ Բայց այսօր Քցխայի հայերն այլ

[1] Ս. Էփրիկեան, "Բնաշխարհիկ բառարան„։ Հատ. Բ., Վենետ. 1907, էջ 51. այսպէս նաեւ Ա-Դ-Օ, "Վանի, Բիթլիսի եւ Էրզրումի վիլայէթները.„ Երեւան 1912, էջ 201։

եւս մահմետականացած են։ Առնունք դար-
ձեալ իբր օրինակ արեւմտեան հարաւային
լեռնակողմը, ուր հայ գիւղերու շարք մը
կայ։ Ամէնէն բարձրադիրը Նորշէն հայ-կթղ.
մեծ գիւղ մըն է. բայց անդին Խաշուր,
ասդին Մէշուռ եւն մահմետական եղած
են։ Գոնէ խառն բնակչութեամբ է Վախընի-
ջանը. մահմետական եղած են ասդին եւ
անդին պատմական գիւղերս՝ Գէղջիկ իւր
բերդով (կ. Kegik) եւ Վարդաշէն (այժմ
Վարդշէն եւ Վարշէն, կ. Vartshin), ուր
բնակած էին Հազարաւուխտի պարսիկ
գնդերն, երբ «երթեալ յՈտաղն» (= Թոր-
թում) կը հալածէին զՎահան Մամիկո-
նեան. (Ղազ. Փարպեցի, ՀԹ)։ Մահմե-
տական եղած է Ջէնակ գիւղը, ուսկից
էր Ղեւոնդեանց դասէն «երանելին Աբրա-
համ երէց» (Փարպ. ԾԳ, կ. «Zinager»,
այժմ «Զինակիր» եւ նաեւ «Զինաւոր»),
թէեւ այս միեւնոյն հովտին շարունակու-
թեան մէջ քրիստոնեայ մնացած են Գառն-
կոց («Քարընկոս», կ. Karangots), Խոս-
պրիկ (կ. «Chosprik», հին Խոսպէրիկ)
եւն։ Մահմետական է այժմ Սողէր, բայց
դիմացի Ոսպատը՝ հայ-կթղ.։ Այսպէս
ամէն կողմ այս հին աշխարհիս մէջ, գիւ-

ղերու մեծամասնութիւնը մահմետականացած է։

Դիտենք որ արդի անուանց մաս մը հին է. միւսները բնականապէս յընթացս դարուց փոխուած են, ոմանք այսօր պէսպէս կը հնչուին։ Հնագոյն հայ ձեռագրաց մին, ՆԼԵ (=986 Ց. Ք.) թուին գրուած, որ Կարնոյ Սանասարեան վարժարանի հաւաքման մէջ էր[1], ունի նաեւ առուծախի եւ ժառանգութեանց բաժանման բազմաթիւ յիշատակագրութիւններ, գէշ գրուած եւ դժուարընթեռնլի ու սխալագիր, բայց յամենայն դէպս հին (հմմտ. "պռիստիմենտայ" եւն բացատրութիւնք,) եւ կ'երեւայ թէ Թորթումէ են։ Այս տեղ կը յիշուին գիւղացիք "Խոշայ" որ անշուշտ արդի Քոշխա է. վկայից մին է "Սողչկոյ Աշոտոյ Ք(րի)ստափորի", որ ի հարկէ արդի Սողէջն է։ Տեղւոյս չէ մանրամասնել մնացեալ դժուարընթեռնլի անունները։ Կարնոյ Արծնեան վարժարանի Ձեռագրաց մէջ կայ Թ. 807 հին Աւետարանը[2] "որ անուն սորա Հայք Անդոն կոչի", եւ կը վերաբերէր երբեմն եկեղեցւոյն "Ոպոտայ գեղջին որ է

[1] Հմմտ. Հր. Աճառեան, Ցուցակ եւն, Թ. 1, էջ 1–2։

[2] Հ. Յովսէփ Վ. Քօսեան, Ցուցակ, Թ. 6. անտիպ.

երկիրն Թորթումայ„։ Որովհետեւ մնասուած էր (“կրակ անկաւ„ եւն), պէտք էր նորոգել. եւ զասի ի գլուխ հանած է Կարնոյ Թուանջ գիւղէն Առաքել, որ անձամբ գացած է Ոտոք, հրաւիրանօք եւ ընկերակցութեամբ “Ղուկաս արքեպիսկոպոսին, որ նայ էր առաջնորդ երկրին, որ գնացինք Ոտոք գեղն, լսեցաւ մեր գնալս, քահանայքն եւ տովլաթ(աւ)որքն վերայ եկին, խիստ աղէկ հարկիս արարին„ եւն։ Այս ամէնուն եւ կազմելուն Թուականն է ՌԽ = 1591։ Իսկ այսօր Ոդոկ (Կ. Odek) մեծ հովտին մէջ քրիստոնեայ չկայ. ամբողջը մահմետականացած է։

Ճշդիւ այս տարին կամ տարի մը յառաջ Թուրքերը վերջնականապէս գրաւեցին՝ ի միջի այլոց՝ Թորթում գաւառը, թէեւ կանխաւ ալ հոն մտած էին 1514ին, եւ մանաւանդ 1549ին գրաւած բոլոր բերդերը։ Վերջնական գրաւման տարեթիւը կու տան նաեւ մեր Տարեգիրք, երբ օրինակի համար ՌԼԹ (= 1590) տարւոյ համար կը նշանակեն թէ “մեծ սուգ եղեւ քաղաքին (Կարնոյ) քանզի զԹորդոմու յորէրն տէրէցէն[1]։

[1] Հմմտ. “Դիւան պատմութեան Հայոց„ հրատ. Գիւտ քհն. Աղանեան, Հտր. Ժ, էջ 102։

Զանգուածային մահմետականացում մ'եղած է հոս 1643ին, երբ՝ ինչպէս կը գրէ Յակոբ Կարնեցի, Ջաֆար մօլլայ աշխարհագիր ընելով "արար դաւտար եւ կապեաց ծանր խարաճ": Հայոց այն մասն, որ թէեւ ազգաւ եւ լեզուաւ հայ էր, բայց վրական եկեղեցւոյ կը վերաբերէր, "ի յահէ խարաճին դարձան յօրէնս Մահմետի": Յակոբայ Կարնեցւոյ խօսքն ասոնց մասին որոշ ու պայծառ է. "Էին բնակիչք երկրին կէսն հայ ազգաւ, եւ կէսն կրօնիւ վրացի, բայց հայի լեզուաւ խօսէին" (Յակ. Կարն., էջ 17—18): "Հայ ազգաւ" եւ "կրօնիւք վրացի" հակադրութիւն են կրօնական տեսակէտով, ոչ թէ ազգային, ինչպէս արդէն "հայի լեզուաւ" կը ցուցնէ[1]: Ասոնք "վրացի" էին այնպէս՝ ինչպէս վերն արդէն տեսանք նաեւ այսօր „Firengi“ կամ "Փրանկ" Հայեր: Ինչպէս Բիւզանդեանց իշխանութեան ներքեւ ունեցած ենք նաեւ շատ բազմաթիւ "Հոռոմ" Հայեր, որոնցմէ այսօր ալ կան՝ յունածէս, բայց տակաւին հայախօս Հայ-

[1] Այս դիտողութիւնը կ'ընենք. որովհետեւ Macler տարակուսական ձգուած է եւ թէեւ հարցականով՝ թարգմանած է թէ նաեւ այս վրացիք. ըլլան par moitié... en tant que race et religion (?), Կարնեցւոյն խօսքն այս իմաստը չունի եւ չէր կրնար ունենալ:

Հռոմներ (յՃկն եւն), նոյնպէս պատմութեան բերմամբ ունեցած ենք "կրօնիւք վրացի" Հայեր — չհաշուելով լիովին վրացած՝ ինչպէս նաեւ յունացած ու կորսուած Հայերու բազմութիւն մը։ Այս մասին ընենք հոս համառօտ դիտողութիւն մը։

Տայք Հայաստանի մեծագոյն մասին հետ Պարսից բաժնին մէջ մնաց, մինչ Բարձր-Հայք (Բաբերդ-Սպեր, Երզնկայ-Կարին, չյիշելով աւելի հարաւայինքը) հռոմէական բաժնին անցան, երբ Հռոմէացիք եւ Սասանեանք Արշակունեաց Հայաստանը բաժնեցին (387ին) առ ժամն թողլով կրկին Թագաւորաց ներքեւ։ Եւ այսպէս՝ ինչպէս յառաջ դարեր, այնուհետեւ ալ գոնէ չորս դար բախտակից էր Հայաստանի եւ մասնակից անոր պատմութեան, ինչպէս ակնարկուեցան արդէն Վարդանայ եւ Վահանայ Մամիկոնեանց օրերուն այս կողման դէպքերն։ Ցընթացս ժամանակի Բագրատունիք՝ Բաբերդ-Սպերէն ասդին ընդարձակ կալուածներ ստացած էին նաեւ ի Տայս, ինչպէս այլուր. եւ մինչդեռ կը ջանային եւ ի վերջոյ յաջողեցան վերականգնել Հայաստան՝ գեղեցկաշէն Անի մայրաքաղաքով, չկրցան զայն իրեն նախնական (Արշակու-

նեաց) սահմաններուն ընդարձակութեան հասցընել։ Աշոտ Բագրատունի (787—826) տիրելով Արտանուշի եւն՝ հիմ դրաւ Կղարջաց կամ Գուգարաց-Տայոց իշխանութեան։ Հայ իշխանութիւնս՝ բաց ի Գուգարաց ու Տայոց հայ գաւառներէն՝ շուտով միացուց նաեւ վրական (մեսխ եւն) գաւառներ, եւ այսպէս ի վերջոյ խառն բնակչութեամբ պետութիւն մ'եղաւ։ Իւր մեծագոյն ծաղկման դարն է Ժ. դարը։ Հայք յաճախ "Տայոց,, անուամբ կը յորջորջեն այս իշխանութիւնը (հմմտ. օրինակի համար "տանն Տայոց,,՝ Արիստ. Լաստ., գլ. Ա. եւն, բայց նաեւ "զԿիւրապաղատին իշխանութիւն,,՝ գլ. ԺԷ. եւ նմանք այլուր)։ Վրական աղբիւրները՝ Կղարջք գաւառէն առեալ կը կոչեն սովորաբար "Կլարջէթի,, — որ ընդարձակագոյն նշանակութիւն մը կ'առնու անով։ Իսկ Բիւզանդացիք յաճախ պարզ "Վիրք,, կը կոչեն, անուանակոչութիւն մը՝ որ ի հարկէ անծանօթ չէ մեր մատենագրաց ալ, եւ որ Գուգարաց բդեշխութեան ենթարկեալ աշխարհաց գոնէ մէկ մասին համար կայ արդէն մեր հին պատմական գրականութեան մէջ ալ։ Այս "Վիրք,, սակայն զանազանելու է բուն Վրաստանէ, որ իւր սեպհական Թա-

գաւառներն ու իշխաններն ունէր միշտ։ Այս զանազանութեան անուշադրութենէ ծագած է այն լիակատար անմիաբանութիւնը մէկ կողմանէ մեր Հին աղբերաց տուած “Վրաց„ իշխանաց անուանց ու պատմութեան եւ միւս կողմանէ վրական աղբերաց տուած տեղեկութեանց միջեւ։ Իրականին երկուքն ալ տարբեր տեղերու եւ տարբեր իշխանաց պատմութիւններ կ'աւանդեն։ Բիւզանդեանք “Կիւրապաղատ„ յորջորջանքը կու տային Տայոց-Կղարջաց այս իշխանաց։ Արդ կրօնական վէճերը՝ մանաւանդ Քաղկեդոնի ժողովոյն խնդիրը՝ ինչպէս անհատնում գժտութեանց առիթ եղան Յունաց եւ Հայոց միջեւ, եղան նաեւ պատճառ վիճմանց եւ պառակտման Հայ եւ վրական եկեղեցեաց։ Տայոց-Կղարջաց Բագրատունիք, որոնք շուտով խնամութեան կապեր հաստատած էին ափխազեան, վրական եւն տանց հետ, երբեք չմոռնալով տակաւին իրենց կապն Անւոյ Բագրատունեաց հետ, ի կրօնականին կողմնակից էին ինչպէս յունական՝ նոյնպէս ի մասնաւորի վրական եկեղեցւոյ։ Այս ժամանակներէն արդէն (Թ.— Ժ. դարուն) վրական եկեղեցին գերիշխող դիրք սկսած է ունենալ Տայոց մէջ ալ,

եւ արդէն այս ժամանակ գտնուելու էր (բաց ի իշխող՝ եկեղեցական եւ աշխարհական դասակարգէն) նաեւ ժողովրդեան մէջ մաս մը վրածէս հայերու։ Վրական եկեղեցւոյ վերաբերող այս Հայք արդիւնք ունին թէ վրական եւ թէ հայ գրականութեան համար, հայերէնէ թարգմանած են բազմաթիւ գործեր, որոնք հետզհետէ աւելի երեւան կու գան։ Նաեւ վրական գրաւոր ու արձանագիր յիշատակարանաց մէջ յիշուած նշանաւոր անձանց մեծագոյն մասը՝ Բագրատունեաց եւ առ հասարակ հայ աւազանւոյ սովորական անուններէն զատ (Բագարատ, Սմբատ, Ատրներսեհ եւն եւն) յաճախ զուտ հայկական անուններ կը կրեն (Ջոջիկ պատրիկ եւն)։ Այս իրերը հոս չենք կրնար աւելի մանրամասնել։ Արդ Բիւզանդացիք սխալ քաղաքականութիւն մը սկսան ԺԱ. դարուն, եւ կործանեցին Հայաստանի Բագրատունեաց թագաւորութիւնը եւ քայքայեցին նաեւ Տայոց իշխանութիւնը[1]։ Տայոց Դաւիթ Մեծ Կիւրապաղատը († 1000ին), թունաւորուած յունասէր

---

[1] Համմտ. ի միջի այլոց Aram Akoulian, Einverleibung armenischer Territorien durch Byzanz im XI. Jahrh. Gruningen 1912.

կուսակցութեան կողմանէ, իբր թէ կտակաւ Վասիլ կայսեր թողուցած ըլլայ իւր գաւառները. կտակ մը՝ որուն շատ կը նմանի Անւոյ մասին ալ պատրուակուած չարաշուք կտակը: Արդիւնքը միայն այն եղաւ որ քիչ մ'ետքը սկսած Սելջուկեան հեղեղն այլ եւս անարգել ողողեց ու կործանեց ոչ միայն Հայաստանն ու Տայք. այլ գրեթէ անմիջապէս նաեւ Բիւզանդեան կայսրութեան ամենամեծ մասը՝ ամբողջ Փոքր-Ասիան նուաճեց: Բայց այլ եւս Վրական Բագրատունիք[1] յաջողեցան միացնելով Ափխազաց ու Վրաց գահերը՝ վերակազմել Վրաստանը, ձեռք բերել կրկին Տայոց գոնէ մէկ մասը, մայրաքաղաք ընել Տփղիս, եւ ի վերջոյ գրաւել նաեւ Անւոյ իշխանութեան գոնէ մաս մը: Յորչափ համերաշխ էին բազմազան ցեղերը եւ նաեւ Հայք, որոնց յոյսը՝ Անւոյ անկմանէն ետքը, միայն

[1] Բագրատունեաց մասին նորագոյն երկը՝ Josef Marquart, Osteuropäische und ostasiatische Streifzüge. Leipzig 1903, p. 391—465. Հեղինակէն դաս ընդարձակուած եւ սրբագրուած՝ "Բագրատունեաց ծագումը: Ա. Հայ Բագրատունեաց ծիւղագրութիւնը: Բ. Վրական Բագրատունեաց ծագումը". Թրգմ. Հ. Մեսրոպ Վ. Հապոզեան: Վիեննա 1913. Ազգ. Մատենագր. ՀԳ.: Տարօնի Բագրատունեաց մասին ընդ. մանրամասն գործը տակաւին լոյս չէ տեսած:

այս Բագրատունիք էին, ծաղկեցաւ պետութիւնը, մանաւանդ ԺԲ. դարուն։ Բայց տիրող աւատական դրութիւնը, ներքին երկպառակութիւնք, կրօնական վէճեր եւ հալածանք իսկ մանաւանդ Հայոց հանդէպ, ԺԳ. դարուն պառակտեցին այս բաւական մեծցած պետութիւնը։ Սարգիս (1269ին) հիմ դրաւ Սամցխէի իշխանութեան, որուն կենդրոնն եղաւ Ախալցխա. եւ այս իշխանք «Աթաբեկ» յորջորջուած, տիրեցին նաեւ Տայոց գոնէ մէկ մասին։ Տայք ուրեմն բաւական երկար ժամանակ վրահայ իշխանութեան ենթարկուած են. եւ բնական է թէ հայ իշխանական տանց յընթացս դարուց փոխանակեցին յաճախ վրականք, վրածէս եկեղեցին աւելի տարածուեցաւ եւն։ Բայց բուն վրական (մեսխ եւն) ժողովուրդ հազիւ թէ՝ նաեւ դոյզն չափով մուտք գտած ըլլայ ի Տայս։ Ամբողջ աշխարհին մէջ չի գտնուիր գիւղի մ'անուն՝ որ իրօք վրական ըլլայ, ամէնքը հայկական են մինչեւ այսօր։

Իրերն այս դրութեան մէջ էին երբ Թուրքերը Պարսից դէմ, որոնց գերիշխանութեան ներքեւ էին ինչպէս Տփղիս, նոյնպէս Ախալցխա, պատերազմելով տիրեցին Թորթումի 1549ի. եւ Չըլտըրի ճակատա-

մարտէն ետքը (1578) Աթաբեկութեան ամբողջ հողերուն, զորոնք պահեցին 1590էն դաշամբ մինչեւ 1828։ Անմիջապէս կը սկսէր հալածանքը. եւ նախ մանր իշխաններէն մաս մը՝ անձնական շահերու համար՝ կը մահմետականանար, եւ աթաբեկ Բեգա Գ՝ իր իշխանութիւնը փրկելու համար, մահմետական կ՚ըլլար ինքնին՝ առնելով Սաֆար փաշայ անունը (1625 եւն)։ Յաջորդը Ռուստամ Փաշայ (1635է սկսեալ) մոլեռանդ մահմետական մ՚եղած էր. եւ այնպէս սաստկացուց կրօնի հալածանքն, որ քիչ մ՚ետքը բուն վրական (մեսխ եւն) տարրը լիովին մահմետական եղած էր եւ վրական եկեղեցին — որ հոն անկախ էր Տփղիսի եկեղեցիէն, — այլ եւս գոյութիւն չունէր։ Հազիւ սակաւաթիւ վրացի գիւղացիք մնացած էին քրիստոնեայ "առանց հովուաց„ հոս ու հոն (հմմտ. Brosset, Histoire etc. II, 1, էջ 199—238)։ Այս պարագային դիւրաւ կ՚ըմբռնուի թէ Տայոց մէջ ալ գտնուող վրածէս Հայերը (որոնք միշտ հայ մնացած էին ազգաւ ու լեզուաւ) առանց եկեղեցական նուիրապետութեան եւ անհովիւ մնացած՝ դիւրաւ զանգուածօրէն մահմետականացան 1643ի

“խարաճ„ի մը պատճառաւ։ Յակոբ Կար-
նեցի իւր գրած միջոցին՝ ԺԷ դարուն վեր-
ջին քառորդին՝ տակաւին կրնար ուրախա-
նալ թէ գոնէ Հայոց միւս մասը “մնացին
ի վերայ հաւատոցն ողորմութեամբն Քրիս-
տոսի եւ աղօթիւք Ս. Լուսաւորչին„ (անդ)։
Բայց կարգը պիտի գար անոնց ալ՝ եւ
բունի մահմետականացումը հոս ալ. մեծ
ծաւալ պիտի առնուր ոչ միայն ԺԸ դարուն
ընթացքին մէջ, այլ նաեւ ԺԹ դարուն,
ինչպէս յիշեցինք արդէն Քցխայի 800 տուն
Հայոց պարագան։

Թէ այս հալածանաց ատեն եւ թէ
1828ի գաղթի ժամանակ՝ նաեւ այս ձո-
րերէն փախած եւ գաղթած են շատերը։
Երբ Քոխ Նառիմանէ (Հին Մամրուան)
կ՚անցնէր, այս գաւառիս շատ գիւղերը
լքեալ ամայի մնացած էին, եւ “եթէ ռուս-
թուրք ռազմաճակատը ներկայացընող քար-
տէսը նկատենք, պիտի գտնենք հոն բազ-
մութիւն մը գիւղերու, որոնք այժմ միայն
անուամբ գոյութիւն ունին„ (Քոխ, էջ 261)։
Ասի արդիւնք էր նաեւ Տայոց գաւառաց
մահմետականացած կէս-անկախ իշխանաց
ապստամբութեան մը, (որուն մէջ գլխաւ-
որ դեր ունէին Արդուինի եւ Օլթիի տէ-

րերը) եւ Թուրքերն իրենց հանրածանօթ ոճով նուաճած էին։ Այս ամայի գիւղերը հայ գիւղեր էին, որոնցմէ մաս մը միայն կրկին հայ մնացած է։ Միւսները կամ մահմետականացած են, կամ նաեւ՝ աւելի նուազ՝ եկուոր օտար մահմետականներէ բռնուած։ Նաուման արդէն կը վերաբերի այն մեծ աւազանին, որուն կեդրոնն եղած է Օլթի (հին՝ Ուխտիք), եւ որուն վրայ կ՚իջնային Տայոց նահանգին միւս գաւառները, որոնց մէկ մասին հնագոյն անունները մնացած են այսօր ալ. այսպէս՝ Պուր-տէղլուցէօր է արդի Պուրտէզ (Կ. Bardus)։ Հոս ալ բոլոր ձորախմբերն իրենց ջրերով հայ անուններով մնացած են, թէեւ նոյնպէս թեթեւ աղաւաղմամբ։ Յիշեցինք Բանաքլա կամ Բանասքէրտ (Կ. Panaskert), որուն ամփոփումը թրք. Pennek (ինչպէս կը գրէ նաեւ Քօխ) ինքնին ճանաչելի է. (այս ձեւէն է արդի երբեմն գրուած "Փանակ")։ Բանջըռաթ կը ճանչցուի՝ եթէ նաեւ Կիպերտի հետ Pandjuret գրենք։ Անուանց շատերուն մէջ վերջին -ձօրը քարտէսներու վրայ կը գրուի -sor, օրինակի համար Karisor եւն, որոնք յայտնի են։ Զիարդ եւ իցէ Օլթիի աւազանին մասին

հոս չենք ուզեր երկարել, քանի որ հոն հին ազգաբնակչութիւնը շատ փոխուած է մանաւանդ 1878էն ետքը Ռուսաց ձեռք անցած բաժնին մէջ։ Բնիկներուն մաս մը գաղթած է, եկած են նորեր, եւ այս շարժումը կը շարունակուի ցայսօր։ Անոր համար Տայոց ռուսական մասը նկատի չենք առնուր նաեւ յաջորդ դիտողութեանց մէջ։

Տայոց միւս մասերուն, ուստի վերը նկարագրուած Կիսկիմ եւ Թորթում գաւառներուն արդի վիճակը հետեւեալն է։ Նախ այս ամբողջ գծին վրայ նաեւ այսօր՝ ինչպէս տեսանք անցողակի, հայ-քրիստոնեայ բաւական բնակչութիւն կայ, բազմաթիւ անխառն գիւղերով ալ։ Հայ գիւղերն անհամեմատ բարձր են թէ՛ քաղաքակրթութեամբ եւ թէ՛ տնտեսապէս, թէեւ յաճախ նուազ բարեբեր հողեր ունենան։ Կան դարձեալ՝ թէեւ հոս շատ փոքրաթիւ՝ նորեկ մահմետականներ. եւ ասոնք են՝ ինչպէս ամէն տեղ՝ մահմետական մոլեռանդ տարրը, որ սակայն միշտ պատրաստ է գաղթելու, երբ պարագաները փոխուին։ Մահմետականաց ճնշող մեծամասնութիւնը հայ-մահմէտական է, որուն մէջ իբր մոլեռանդ տարր կայ — բաց ի սակաւաթիւ պաշ-

տօնէութենէ — մօլլայ ու բէկ, ցորչափ այս ամէնն բնիկ է, եւ դարձեալ այլեւայլ օսմ. սպայք, որոնք հանգստի կոչուած իրենց հայրենիք դարձած են։ Այս իշխող տարրը որուն մէկ մասը բնիկ չէ, — շատ փոքրամասնութիւն է՝ համեմատութեամբ գիւղացւոց։

Երկիրս մէկ ծայրէն միւս ծայրը հայ նկարագիրը պահած է անով որ բոլոր անուանք մնացած են հայերէն, ոչ միայն մահմետականացած գիւղերուն, այլ անոնց անթիւ մանրամասնութիւնք ալ՝ անուանք գիւղամասերու կամ թաղերու, լերանց, գետոց ու առուակաց, արտերու, քարին ու ժայռին, այս ամէնը ճնշող մեծամասնութեամբ. (օրինակ՝ Արդէր, Քարտուտ, Ջաղցըներ, Սորտուտ, Խոտորուտ, Մեղրաջուր եւն եւն)։ Լեզուի կողմանէ ի հարկէ օտար ուղեւորի մ'առաջին տպաւորութիւնն այն կ'ըլլայ թէ մեծ մասն այլ եւս թրքախօս եղած է։ Բայց նախ նկատելի է որ հայմահմետականը ստիպուած էր եւ է մանաւանդ Համիտական շրջանէն ի վեր՝ խորշիլ հայութեան արտաքին երեւոյթներէն իսկ, չհալածուելու համար. անոր համար կը զգուշանայ ամէն տեղ ուրիշ լեզուաւ խօ-

միլ օտարականին հետ՝ բայց միայն պետա-
կան Թուրք լեզուաւ, որչափ կրնայ։ Բայց
երկրորդ՝ այս Թուրքերէնը տարօրինակ է,
որուն ի հարկէ մտադիր չեն կրնար ըլլալ
եւրոպացի ուղեւորք։ Նախ հոս ի Կիսկիմ
ու Թորթում, ամէն տեղ՝ ուր նաեւ իրօք
Թրքախօս եղած են, այդի Թուրքերէնը
խառնուրդ մըն է Հայերէնի հետ, ա՛յնպէս
խճողուած Հայերէն բառերով՝ ամէն կարգի։
Կը բաւեն քանի մը բառեր իբր օրինակ.
գալէկ ու ածէկ (ցորեն), լաղըրդ (եգիպտա-
ցորեն), հէրլ. կէամ (= կամ), փարախ, կո-
տող եւն. — բանջար, շամիշ, պատլէճ եւն. —
թարլէֆ (կերակուր մը), շըրխան, հառնադար,
ֆոխլէնդ, Խէջխաշ եւն. — կաղամ (կիր, ճ),
կառառ (տանեաց ծածկի փայտեր, գերմ.
Schindel), Խախման (ձեռնոց, թաթպան),
պըլըղ (երկնկեկ) եւն. — խնամի. թէրի եւն
եւն։ Խոտրջրոյ եւ Տայոց աշխարհի բար-
բառին երախտալից հաւաքիչը, որ զոհ գնաց
1915ի Թուրք բարբարոսութեան (Հ. Մատ-
թէոս Վ. Հաճեան,) տարիներով աշխատած
(անտիպ) հաւաքմամբ, կրնար ճշդիւ Թրքա-
խօս եղած արուեստաւորաց բերնէն քաղել
տնաշինութեան եւն վերաբերեալ հայ բա-
ռերը։ Տողերուս գրողն երբ յաճախ մտա-

գիր կ'ըներ այսպիսի հայ բառերուն, պատասխան կ'ընդունէր թէ "Մեր գիւղն այսպէս կ'ըսեն,,։ Յաճախ թուրք համագօրներն անծանօթ էին խօսողներուն։

Անցելոյն յիշատակն եւ ազգային գիտակցութիւնը — որչափ այս մասին կարելի է խօսիլ մանաւանդ Թուրքիոյ մէջ մահմետական ըմբռնմանց համար, — լիովին չէ մարած։ Կան նոյն իսկ ձորեր, ուր սովորական են այս մականուններ հայ-մահմետականաց՝ Կոոփան-օղլի, Կէրաչոո-օղլի, Գաոողար-օղլի, Մանուկ-օղլի, Փափախէր-օղլի ("փափախէր,,՝ "փափայ,, կերակրէն). Կողաւ-օղլի ("կողաւ,,՝ բիր), եւ նմաններ։ Խնուսի ձորը՝ Քաջքարի ստորոտին ամենաբարձրը՝ հնուց մահմետականացած է՝ Համշէնի հետ, փոքրաթիւ քրիստոնեայք միայն մնալով։ Այս մահմետականք այսօր ալ կը յիշեն իրենց ազգակցութեան եւ խնամութեան կապերն այն քրիստոնեայ ազգակցաց հետ, որոնք շատոնց հեռացած ու գաղթած են այլուր՝ գլխաւորաբար կրօնական բռնութենէ ազատ մնալու համար։ Տողերուս գրողն առիթ ունեցած է ի Կարին ճանչնալու քրիստոնեայ ազգակցաց այցելութեան եկած մահմետական Խնուսակցիներ, որոնք հայերէն գիտէին։

Մեր յաճախակի հարցմանց ի Թորթում եւ այլուր թէ ի՛նչ են իրենք իրականին՝ պատասխանը կ՚ըլլար նախ միշտ մահմետականացածներուն այն հաստատատիպ խօսքը թէ "Իսլամ էնք„։ Բայց նաեւ այս "իսլամք„ գիտէին թէ իսլամ զանազան ցեղեր կան։ Մեր հարցման թէ իրենք ուրեմն "Թո՞ւրք„ էին, Լա՞զ թէ այլ ինչ, Բացորոշ կը ժխտէին՝ ըսելով թէ չէնք ո՛չ Թուրք էնք, ո՛չ Լազ, ո՛չ "Կիւրճի„, ո՛չ Քուրտ, ո՛չ Չէրքէզ, միով բանիւ ո՛չ ազգ ու ցեղ մը՝ որ հոս կրնար ի նկատի առնուիլ։ Բայց նաեւ "Հայ էնք„ չէին կրնար ըսել. որովհետեւ "Հայ„ եւ "Քրիստոնեայ„ համազօր բառեր եղած են հոս, ինչպէս ուրիշ շատ տեղեր ալ։ "Մեր պապերը (իսլամական) ճշմարիտ կրօնքը գտեր են, եւ ասի կը բաւէ„. — այս էր վերջնական պատասխանը։ Միւս կողմանէ յաճախ կը պարծէին թէ "իրենց պապերը„ շինած են այն հոյակերտ կանգուն (ու մզկիթ եղած) կամ նաեւ աւերակ եկեղեցիները։ Խնդիր չկայ թէ նաեւ հոս հայմահմետական կինը շատ աւելի պահած է իւր բարբառն ու քրիստոնէական սովորութիւնները։

Հայ-մահմետականը կրօնափոխ եղած

է բռնութեան ներքեւ. բայց իւր վիճակն աւելի բարւոքած չէ այսօր քան քրիստոնէին: Անշուշտ վերջնոյս կրած այլեւայլ տառապանքներէն զերծ է. բայց այլուստ աւելի եւս անոք ու ստրուկ եղած է յաճախ ինքնակոչ բէկերու ձեռքը: Հոս լազ բէկերն այն դերը կը խաղան՝ ինչ որ քիւրդ բէկեր ուրիշ տեղեր, գործակցութեամբ թուրք պաշտօնէութեան: Հիանալի մրգաւէտ երկրիս պարտէզները մեծ մասամբ բէկերու ձեռքն են. եւ գիւղացին ստիպուած է յաճախ անոնցմէ պտուղ գնել, տանելու ի Կարին ու վաճառելու, եւ այսով հոգալու իւր աղքատին տան գոնէ անհրաժեշտ պէտքերը: Կտոր մը հող՝ լերան մը զառիկողին վրայ՝ հազիւ կրնայ հայթայթել իրեն ձաւրէնայ մը: Միով բանիւ աղքատ գիւղացի մըն է, չարքաշ եւ կապուած իւր հողին: Փոխադրութեան միջոցներն ընդհանրապէս այս հազիւ անցանելի արահետներուն վրայ միայն ձին ու ջորին են:

* * *

Սեւ ծովէն Կարին տեսանք գաւառներու շարք մը, որոնց հնուց ի վեր ապ-

րող մեծ բնակչութիւնը՝ Հայութիւնը մինչե-
ԺԸ դարուն կէսերը բոլորովին թրքախօ-
սեալ էր: Նոյն միջոցին սկսած բռնի իսլա-
մացումը՝ կոտորածներով ալ՝ հսկայ չա-
փեր առած է ԺԸ դարուն ընթացքին
մէջ, շարունակուած նաեւ ԺԹ դարուն:
Բայց հայ նկարագիրը մնացած է ամէն կողմ,
շատ տեղ տակաւին հայ լեզուն ալ: Ծայրէ
ծայր հայ անուններ Համշէնէ ու Սեւ-
Գետէ Սեւ ծովու վրայ՝ մինչեւ Բաբերդ-
Սպեր եւ Կիսկիմ-Թորթում: Խաղաղ
վարչութեան մը տակ, երբ անհետանայ
Թուրքի ու մահմետական բռնապետական
ճնշումը, մահմետականութիւնն անշուշտ
կը մնայ այս բնակչութեան մէջ. բայց հայ
լեզուն յանկարծ պիտի լսուի նաեւ այն
տեղ, որ լրովին թրքախօս եղած կ'երեւար:
Յամենայն դէպս հայ-մահմետականը բարի
դրացի մը պիտի ըլլայ քրիստոնեայ հայուն
հետ, ինչպէս է արդէն շատ տեղ:



# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. Գալէմքեարեան Հ. Գր. Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն: 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոշէր, Իրաւունք Հայոց: 1890: Էջ 85+59: Փր. 3.–

Բ. Մէնէվիշեան Հ. Գ., Ազգաբանութիւն ազն. զարմին Տիւզեանց: 1880: էջ 50: Փր. 1.50

Գ. Տաշեան Հ. Յ., Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: Էջ ԺԱ+159: Փր. 4.–

Դ. Տաւն Դ., Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: Էջ 79: Փր. 2.–

Ե. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: Էջ Դ+272: Փր. 5.–

Զ. Տըմշէ Ա. եւ Գ. Փիտոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: Էջ 82: Փր. 2.—

Է. Մառ Ն., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ո. Անոփեան: 1892: 89: Փր. 2.—

Ը. Կարրիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Ժ+51: Փր. 2.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտր. Ա. 1794—1860: (1 լուսանկարով:) 1893: Էջ 232: Փր. 4.—

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Է+92: Փր. 2.—

ԺԱ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 գծնկատիւ.) 1893: Էջ Ժ+533: Փր. 7.—

ԺԲ. Խաչաթեան Գր., Ջենոբ Գլակ, համեմատական ուսումնասիրութիւն: 1893: Էջ Ձ+78: Փր. 2.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փ., Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տախտկ. 55 պտկ.:) 1894: Էջ Ը+103: Փր. 3.—

ԺԴ. Կարրիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտր. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1894: 8° Էջ ԺԱ+43: Փր. 1.50

ԺԵ. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Բրոքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: Էջ Թ+145: Փր. 3.–

ԺԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. Մասն Ա: Ա–Զ. Նեմեսիոս, Պրոկղ Դիադոխոս, Խոսրովիկ, Գիրք Հերձուածոց, Պրոկղ եւ Սեկունդոս: 1895: Էջ ԺԲ+296: Փր. 5.—

ԺԷ. Տաշեան Հ. Յ. Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ամփոփուած եւ թարգմ. ծանօթութեամբք: 1895: Էջ Թ+202: Փր. 4.—

ԺԸ. Տիռրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: Էջ 92: Փր. 2.50

ԺԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Գերլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: Էջ Թ+352: Փր. 5.—

Ի. Տաշեան Հ. Յ. Վ., "Վարդապետութիւն առաքելոց" անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադդէի: 1896: Էջ Թ+442: Փր. 8.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: Էջ Է+62: Փր. 2.—

ԻԲ. Կարրիէր Ա., Աքգարու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1897: Էջ ԺԵ+107: Փր. 3.—

ԻԳ. Ցովհաննէսեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ոամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ, Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897: Էջ Ը+272: Փր. 6.—

ԻԴ. Ցովհաննէսեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ: 1897: Էջ Ա—Ը: 273—522: Փր. 6.—

ԻԵ. Գէլցէր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք 1. Ցանկ Հայոց կոտորածներու աղթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897: Էջ Ը+130: Փր. 3.—

ԻԶ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., Գիրք (կամ՝ յօղուած) գրելու արուեստը: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: Էջ Է+118: Փր. 3.—

ԻԷ. Խալաթեան Գր., Մ. Խորենացու նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: Էջ Է+53: Փր. 1.50

ԻԸ. Տաշեան Հ. Յ. Վ., Ակնարկ մը Հայ Հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչութեան արուեստին: (10 զինկատիպ պատկերով:) 1898: Էջ ԺԱ+202: Փր. 5.—

ԻԹ. Դաղբաշեան Յ., Փ. Բիւզանդացի եւ իր պատմութեան խարդախողը: Քննութիւնն Մ. Խորենացու աղբիւրների մասին: 1898: Էջ Թ+175: Փր. 3.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն: Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899: Էջ Է+26: Փր. 1.—

ԼԱ. Քօսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ ԺԲ+369: Փր. 7.—

ԼԲ. Քօսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ վիճակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ Ժ+161: Փր. 4.—

ԼԳ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հտր. 1780—1825: 1899: էջ Է+554: Փր. 7.—

ԼԴ. Գազանճեան Յ., Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: էջ Է+120: Փր. 3.—

ԼԵ. Կարրիէր Ա., Հեթանոս Հայաստանի ութ մեհեանները Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան (1 քարտէզով): 1899: էջ 43: Փր. 1.—

ԼԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: էջ ԺԱ+193: Փր. 4.—

ԼԷ. Տաշեան Հ. Յ. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. (տես ԺԶ): Մասն Բ: Է–Ժ. Խիկար եւ իւր իմաստութիւնն, Ագապետոս եւ իւր Յորդորականք առ Յուստինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: էջ ԺԲ+384: Փր. 7.—

ԼԸ. Տէր-Պօղոսեան Գր., Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ: 1901: էջ Ը+110: Փր. 2.—

ԼԹ. Վէքէր Ս., Արարատը Ս. Գրոց մէջ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1901: էջ Ե+77: Փր. 2.—

Խ. Սանտալճեան Յովսէփ Վ., Ասորեստանեայ եւ Պարսիկ սեպագիր արձանագրութիւնք կամ որոնք Նաիրի-Ուրարտու աշխարհին պատմութեան կը վերաբերին: 1901: էջ 262: Փր. 6.—

ԽԱ. Խաչաթեանց Բագրատ, Հայ ժողովրդական դիւցազնական վէպը: 1903: էջ Ը+72: Փր. 2.—

ԽԲ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., Արդի լեզուագիտութիւնը: Հտր Ա.: 1903: էջ Ը+204: Փր. 5.—

ԽԳ. Մարկուարտ Յ., Հայ Բդեաշխք: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1903: էջ 39: Փր. 1.—

ԽԴ. Գեյցէր Հ., Սկզբնաւորութիւնք Բիւզանդեան բանակաթեմերու դրութեան (1 քարտէզով): Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1903: էջ Է+83: Փր. 3.—

Խե. Կիւլէսէրեան Բ. Վ., Ծովք, Ծովք-Տլուք եւ Հոռմ-Կլայ, պատմական եւ տեղագրական ուսումնասիրութիւն: 1904: Էջ Ը+117: Ֆր. 3.—

Խզ. Կիւլէսէրեան Բ. Վ., Կոլոտ Յովհաննէս Պատրիարք. պատմագրական եւ քննասիրական ուսումնասիրութիւն: 1904: Էջ ԺԴ+227: Փր. 5.—

Խէ. Պեդերսըն Հ., Նպաստ մը հայ. լեզուի պատմութեան: Թրգմ. Հ. Դ. Գարանֆիլեան: 1904: Էջ Ը+87: Փր. 2.—

Խը. Տէր-Մկրտչեան Գ. եւ Աճառեան Հ. Ց. Քննութիւն եւ համեմատութիւն Եզնկայ Նորագիւտ ձեռագրին: 1904: Էջ Է+105: Ֆր. 3.—

Խթ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս: Գ. Հտր. 1825–1904: Էջ Ժ+658: Փր. 10.—

Ծ. Շտրէք Մ., Հայաստան, Քրդաստան եւ արեւմտեան Պարսկաստան բաբելական-ասորեստանեայ սեպագրերու համաձայն Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան 1904: Էջ Է+222: Փր. 5.—

ԾԱ. Խալաթեանց Գր., Հայ Արշակունիք ըստ Մովս. Խորենացւոյ, կամ Նոր ուսումնասիրութիւններ Մովս. Խորենացւոյ մասին: Թրգմ. Արսէն Ս. Սիմոնեանց: 1906: Էջ Ը+124: Ֆր. 3.—

ԾԲ. Պեդերսըն Հ., Հայերէն եւ դրացի լեզուները: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1907: Էջ ԺԱ+257: Ֆր. 6.—

ԾԳ. Հիւբշման Հ., Հին Հայոց տեղւոյ անունները: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1907: Էջ ԺԶ+443: Ֆր. 8.—

ԾԴ. Պեդերսըն Հ., Հին հայերէնի ցուցական դերանունները: Թրգմ. Հ. Յ. Տաշեան: 1907: Էջ Է+90: Ֆր. 3.—

ԾԵ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Կենսագրութիւն Սարգիս Արքեպիսկոպոսի Սարաֆեան եւ ժամանակին հայ կաթողիկեայք: 1908: Էջ ԺԴ+433: Ֆր. 8.—

ԾԶ. Աճառեան Հ., Հայերէն նոր բառեր Նորագիւտ Մնացորդաց գրոց մէջ: 1908: Էջ 38: Ֆր. 1.—

ԾԷ. Կիւլէսէրեան Բ. Ծ. Վ., Եղիշէ, քննական ուսումնասիրութիւն: 1909: Էջ ԻԸ+458: Փր. 10.—

ԾԸ[1]. Ակինեան Հ. Ն., Տիմոթէոս Կուզ հայ մատենագրութեան մէջ: Էջ 1—60:

ԾԸ[2]. Աճառեան Հր., Հայերէն նոր բառեր Տիմոթէոս Կուզի հակաճառութեան մէջ: 1909: Էջ 61—106: Փր. 3.—

ԾԹ. Ակինեան Հ. Ն., Զաքարիա Եպ. Գնունեաց եւ իւր տաղերը: 1909: Էջ ԺԲ+87: Փր. 2.—

Կ. Ակինեան Հ. Ն., Կիւրիոն Կաթողիկոս Վրաց: 1910: Էջ ԻԷ+315: Փր. 7.—

ԿԱ. Մէնէվիշեան Հ. Գ. Ծ. Վ., Հայերէն լեզուի ուղղագրութեան խնդիրը: 1910: Էջ 73: Փր. 2.—

ԿԲ. Գիւտերբոք Կ., Բիւզանդիոն եւ Պարսկաստան եւ անոնց դիւանագիտական եւ ազգային-իրաւական յարաբերութիւնները Յուստինիանու ժամանակ: Թրգմ. Հ. Հ. Համբարեան: 1911: Էջ Ը+162: Փր. 4.—

ԿԳ. Սամուէլեան Խ., Մխիթար Գոշի Դատաստանագիրքն ու հին Հայոց քաղաքացիական իրաւունքը: 1911: Էջ ԺԲ+344: Փր. 7.—

ԿԴ. Առաքելեան Հ., Պարսկաստանի Հայերը, նրանց անցեալը, ներկան եւ ապագան: Ա. 1911: Էջ Ը+97: Փր. 2.—

ԿԵ[1]. Յովհաննեան Հ. Ղ. Վ., Միջնադարեան ազգային տաղաչափութիւն ռամկախառն. Էջ 1–48:

ԿԵ[2]. Ակինեան Հ. Ն., Յովնաթան Նաղաշ եւ Նաղաշ Յովնաթանեանք եւ իրենց բանաստեղծական եւ նկարչական աշխատութիւնք: 1911: Էջ 49–117: Փր. 3.—

ԿԶ. Մէնէվիշեան Հ. Գ. Ծ. Վ., Գրիգոր Մագիստրոսի “Գամագտականի„ ամբողջական լուծումը: 1912: Էջ ԺԱ+162: Փր. 3.—

ԿԷ. Գաբրիէլեան Դկտ. Մ. Ս., Ակնայ Գաւառաբարբառը եւ Արդի Հայերէն լեզուն: 1912: Էջ Է+416: Փր. 8.—

ԿԸ. Մարկուարդ Պրոֆ. Դկտ. Յ., Պատմութիւն հայերէն նշանագրերու եւ վարուց Ս. Մաշթոցի: Թրգմ. Հ. Ա. Վարդանեան: 1913: Էջ Է+59: Փր. 2.–

ԿԹ. Աճառեան Հ., Հայոց գրերը (ընդ մամլով):

Հ. Մատիկեան Հ. Ա., Անահիտը կամ Կեղծ-Սեբէոս, քննական ուսումնասիրութիւն: 1913: Էջ Է+91: Փր. 2.50

ՀԱ. Թորգոմեան Տ. Վ. Յ., Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ Պատմութիւն: 1913: Էջ ԼԵ+412: Փր. 8–

ՀԲ. Վարդանեան Հ. Ա., Դասական մանր քննագիրներ եւ ձեռագրական համեմատութիւններ, Ա.: 1913: Էջ Ը+155: Փր. 3.–

ՀԳ1. Մարկուարդ Պրոֆ. Դկտ. Յ., Հայ Բագրատունեաց ծիւղագրութիւնը ծանօթութիւններով: Թրգմ. Հ. Մ. Հապոզեան: 1913: Էջ 68:

ՀԳ2. Մարկուարդ Պրոֆ. Դկտ. Յ., Վրական Բագրատունեաց ծագումը: Թրգմ. Հ. Մ. Հապոզեան: 1913: Էջ 69–150: Փր. 3.–

ՀԴ. Վարդանեան Հ. Ա., Բառաքննական դիտողութիւններ, Ա. 1913. Էջ 120: Փր. 3.–

ՀԵ. Գիւտերբոք Կ., Հռովմէական Հայաստան եւ հռովմէական սատրապութիւնները Դ–Զ դարերուն, Թրգմ. Հ. Մկրտիչ Վ. Նորշուեան: 1914: Էջ Է+94: Փր. 3.–

ՀԶ. Վարդանեան Հ. Ա.՝ Բառաքննական դիտողութիւններ, Բ. 1914: Էջ 110: Փր. 3.–

ՀԷ. Սրապեան Հ. Ի.՝ Ս. Յակոբ ազգային հիւանդանոց: 1915: Էջ ԻԳ+477: Փր. 8.–

ՀԸ. Գալէմքեարեան Հ. Գր. Ծ. Վ., Կենսագրութիւններ երկու հայ պատրիարքներու եւ տասն. եպիսկոպոսներու եւ ժամանակին հայ կաթուղիկեայք: 1915: Էջ Ը+384: Փր. 6.–

ՀԹ. Դաշինթ-Բէկ Մ. Ս., Արաբկիրի գաւառաբարբառը: 1919: Էջ ԺԱ+292: Փր. 6.–

Ջ. Տաշեան Հ. Յ. Վ., Արշակունի դրամներ. Ա: 1919: Էջ Է+192: Փր. 4.—

ՋԱ. Տաշեան Հ. Յ. Վ., Պոնտական ուսումնասիրութիւնք: Մասն Ա.՝ Հետազօտական ուղեւորութիւն ի Պոնտոս. Յ. Գ. Կ. Անդերսընի: Մասն Բ.՝ Ուղեւորութիւն Նախնական Հետազօտութեան ի Պոնտոս եւ ի Փոքր-Հայս. Փր. եւ Եւգ. Կիւմոն Եղբարց: 1919: Էջ Է+420: Փր. 8.—

ՋԲ. Փէրհաթեան Հ. Պ., Ցուցակ Եւրոպական-Հայկական հրատարակութեանց 1896–1910: 1919: Էջ Է+273: Փր. 6.—

ՋԳ. Գաղէմքեարեան Հ. Գր. Ծ. Վ., Նորագոյն աղբերք Եզնկայ Կողբացւոյ: 1919: Փր. 3.—

ՋԴ. Խաչաթեանց Բ., Արաբացի մատենագրեր Հայաստանի մասին: 1919: Էջ Է+147: Փր. 3.—

ՋԵ. Տէր-Պօղոսեան Գր., Նկատողութիւններ Փաւստոսի պատմութեան վերաբերեալ: 1919: Էջ 126: Փր. 3.—

ՋԶ. Ակինեան Հ. Ն. Վ., Գաւազանագիրք Կաթողիկոսաց Աղթամարայ: Պատմական ուսումնասիրութիւն: 1920: Էջ ԺԱ+200: Փր. 4.—

ՋԷ. Մատիկեան Դր. Հ. Ա., Կրօնի ծագումը եւ դիցաբանութիւն ըստ համեմատական Կրօնագիտութեան: 1920: Էջ ԺԲ+334: Փր. 6.—

ՋԸ. Վարդանեան Հ. Ա., Նիւթեր հայերէն բառագրութեան: 1920: Էջ 80: Փր. 3.—

ՋԹ. Վարդանեան Հ. Ա., Յերոնիմեայ վասն ի քան եւ յերկուս գիրս առ ի Հեբրայեցւոց զպատմութիւնսն բաժանելոյ: 1920: Էջ 82: Փր. 3.—

Ղ. Տաշեան Հ. Յ., Հայ բնակչութիւնը Սեւ ծովէն մինչեւ Կարին. Պատմական-ազգագրական հարեւանցի ակնարկ մը: 1921: Էջ 84: Փր. 4.—

---

## ՈՒՍՈՒՄՆ

# ԴԱՍԱԿԱՆ ՀԱՅԵՐԷՆ ԼԵԶՈՒԻ

### Ա Ն Գ Ի Ր   Ժ Ա Մ Ա Ն Ա Կ

ԳՐԵՑ

### Հ. Յ. Վ. ՏԱՇԵԱՆ

---

*Աննախընթաց գործ մը ձեւովն ու նիւթովը, ուր ընթերցողը պիտի գտնէ որոշ ու պայծառ յօրինուածութեամբ ի մի ամփոփուած ու իրարու շղթայուած տեսութիւններ ու կարծիքներ, որոնք յուզուած են թէր ու դէմ Հայ լեզուի ծագման, ազգակցութեան, դասաւորման, զարգացման ու հետեւաբար Հայ ցեղին համաշխարհի պատմութեան մէջ գրաւած տեղւոյն ու դիրքին շուրջ։*

*Հայը իբրեւ արիական ժողովուրդ ու համացեղ եւրոպական քաղաքակիրթ ազգերու ներկայացած է հոս ո՛չ միայն Հայ լեզուին հնդեւրոպականի հետ ունեցած աղերսին մանրամասն քննութեամբ, այլ նաեւ մարդախօսական հետաքրքրական տուեալներով։*

*Հայ լեզուին պատմութիւնը՝ Հայ ժողովրդեան պատմութեան հետ հիւսուած է. եթէ կը հետաքրքրուինք նախկին անգիր ժամանակներու մէջ Հայուն վիճակուած ու Հայուն կատարած դերովը, ահա՛ բարեպատեհ առիթը լիուլի գոհացում տալու մեր այս գովելի հետաքրքրութեան։*

*Լոյս տեսած են Ա—Դ պրակները,* **724** *էջ։*

*Գինն է՝* **60** *ֆր.։*

# ՅՈՒՇԱՐՁԱՆ

## ԳՐԱԿԱՆ ԺՈՂՈՎԱԾՈՅ

### ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅԻ

□□□

*Հայ բանասիրութեան նուիրուած հսկայ հատոր մը — բազմալեզուեան —, ուր եւրոպացի համբաւաւոր հայագիտաց ու հայերէնագէտներու ու ազգային նշանաւոր բանասէրներու անունները կը մրցին իրարու հետ։ Չկայ գրական "Ժողովածոյ" մը, ուր այնքան խտօրէն ներկայացած ըլլան մասնագէտ գրիչներ, քննելու, քննադատելու, լուսաբանելու եւ ուսումնասիրելու համար հայ մատենագրութիւնը, հայ կրօնը, հայ պատմութիւնը, հայ գեղարուեստը, հայ լեզուն, հայ գաւառաբարբառը, հայ լեզուաբանութիւնն ու հայ բառաքննութիւնը, որքան "Յուշարձան"ին մէջ։*

*Եզական ու միակ գործ, ուր Հայութիւնը կրնայ պարծանքով տեսնել իւր եւրոպացի անկեղծ բարեկամներուն, ինչպէս նաեւ հեղինակաւոր հայ բանասէրներու կենդանապատկերները՝ դրոշմուած շքեղ թղթի վրայ։*

**435** *էջ, մեծադիր։*

*Գինն է՝ 60 ֆր.։*

### ԱԿՆԱՐԿ ՄԸ

# ՎԻԵՆՆԱԿԱՆ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ

## ԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

(ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ)

*Ուր վաւերաթղթերու ու վաւերական աղբիւրներու վրայ հիմնուած կը ներկայացընէ հեղինակը Միաբանութեանս պատմութիւնը ներքին ու արտաքին զարգացումը եւ այլն։ Մասնաւորապէս կը նկարագրուին Միաբանութեանս գրական գործունէութիւնը, եւ յատկապէս Մխիթարեան տպարանին պատմութիւնը, մատենադարանի ու հնախօսական իրերու, ինչպէս նաեւ դրամներու հաւաքածոյները եւ դպրոցներով ու "Հանդէս Ամսօրեայ" ով Միաբանութեանս հայ ազգին մատուցած ծառայութիւնները։ Շքեղ տպագրութիւն փայլուն եւ հաստատուն թղթի վրայ, ճոխապէս պատկերազարդուած։ Իբր Ալբոմ կրնայ սեղաններու վրայ դրուիլ։*

Գինն է՝ Թղթակազմ՝ Ֆր. 7.50

Լաթակազմ ոսկեզօծ՝ Ֆր. 15.—:

ԴՐԱՄԱԳԻՏԱԿԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

# ԴԱՍԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՌՈՒԲԷՆԵԱՆ ԴՐԱՄՈՑ

*Լուսանկար պատկերով, 6 վիմատիպ տախտակօք (79 դրամներու պատկ.) եւ բնագրին մէջ 53 դքամներու պատկերով։ Գրեց Հ. ԿՂ. Վ. ՍԻՊԻԼԵԱՆ։ Մեծ հմտութեամբ Ռուբէննեան իւրաքանչիւր թագաւորի մեզի հասած դրամներն կը դասաւորուին ու կը հետազօտուին։ Այս երկը հիմ կը կազմէ Հայ-Կիլիկեան պատմութեան եւ մեր Կիլիկիոյ վրայ ունեցած իրաւունքը կը հաստատէ։*

*Գինն է՝ Ֆր. 10.50:*

---

# ԱՐՇԱԿՈՒՆԻ ԴՐԱՄՆԵՐ

ՀՐԱՏԱՐԱԿԵՑ Հ. Յ. Վ. ՏԱՇԵԱՆ

Տպ. 1919, էջ Է+192։

*Գինն է՝ Ֆր. 4.—:*

□ □ □

*Մեր հասցէն՝*

**P. P. Méchitharistes**

**Vienne, VII/2**
**Mechitharistengasse 4**
**(Autriche).**

